ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԳ.

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

ՀԱՏՈՐ Բ.

5. ՍԵԲԷՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ ԵՒ ԻՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ Ի ՀԵՐԱԿՂ. — 6. ԵՐԳ ՏՈՓԱՆԱՑՆ ՏԻՐԻԹԱՑ. ԱՆՏԵՍՈՒԱԾ ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ ՄԸ. — 7. ՓԱՒՍՏՈՍ ԲԻՒԶԱՆԴԻ ԱՂԲԻՒՐՆԵՐԷՆ. ՍՔԱՆՉԵԼԻՔ ԶՕՐ ԵՑՈՅՑ ԱՍՏՈՒԱԾ Ի ՁԵՌՆ ՍՐԲՈՅՆ ԵՐԱՍԻՄՈՍԻ

ԳՐԵՑ

**Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ**

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1924

# ԱԶԳԱՅԻՆ ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆ

ՃԳ.

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

Բ.



ՎԻԵՆՆԱ
ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ
1924

# ՄԱՏԵՆԱԳՐԱԿԱՆ

# ՀԵՏԱԶՕՏՈՒԹԻՒՆՆԵՐ

## ՔՆՆՈՒԹԻՒՆ ԵՒ ԲՆԱԳԻՐ

---

ՀԱՏՈՐ Բ.

5. ՍԵԲԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ ԵՒ ԻՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ Ի ՀԵՐԱԿՂ. — 6. ԵՐԳ ՏՈՒՓԱՆԱՑՆ ՏԻՐԻԹԱՑ. ԱՆՏԵՍՈՒԱԾ ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ ՄԸ. — 7. ՓԱՒՍՏՈՍ ԲԻՒԶԱՆԴԻ ԱՂԲԻՒՐՆԵՐԷՆ. ՍՔԱՆՉԵԼԻՔ ՋՈՐ ԵՑՈՅՑ ԱՍՏՈՒԱԾ Ի ՁԵՌՆ ՍՐԲՈՑՆ ԵՐԱՍԽՄՈՍԻ

---

ԳՐԵՑ

Հ. ՆԵՐՍԷՍ Վ. ԱԿԻՆԵԱՆ

ՄԽԻԹ. ՈՒԽՏԷՆ



ՎԻԵՆՆԱ

ՄԽԻԹԱՐԵԱՆ ՏՊԱՐԱՆ

1924

# Ե.

# ՍԵԲԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ

## ԵՒ ԻՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ Ի ՀԵՐԱԿՂ

---

# Ե.

# ՍԵԲԻՈՍ ԵՊԻՍԿՈՊՈՍ ԲԱԳՐԱՏՈՒՆԵԱՑ

## ԵՒ ԻՒՐ ՊԱՏՄՈՒԹԻՒՆՆ Ի ՀԵՐԱԿՂ

Նախնեաց մատենագրութեան ճշգրիտ իմացման համար անհրաժեշտ է ունենալ ընտիր ձեռագիրներու վրայ յեցած բնագիրներ, որոնք ներշնչեն մեզի վստահութիւն սկզբնագրին անաղարտ պահպանուած ըլլալու մասին։ Միակ ձեռագրէ հրատարակուած մատենագրութիւն մը չի կրնար ներշնչել մեզի այս վստահութիւնը. իսկ եթէ այս ձեռագիրն ալ ներկայացնէ աղաւաղուած, աղճատուած օրինակ մը, ոչ մեծ հնութենէ մեզի հասած, այնուհետեւ կ՚ըլլայ այն՝ բանասէրներու համար քար գայթակղութեան, որուն շուրջը կը խտանան այնչափ կարծիքներ, որչափ գլուխ որ անոր վրայ յոգնի։

Դժբախտաբար մեր հին պատմական մատենագրութեան ամէնէն կարեւոր մնացորդները՝ Փաւստոս Բիւզանդ, Կորիւն, Ղ. Փարպեցի, Սեբիոս հասած են մեզի այսպէս միակ եւ այն ոչ մեծ հնութեամբ ձեռագիրներով։ Իրաւունք ունի բանասիրութիւնը ոչ միայն անոնց ամբողջութեան, այլ եւ պահուած մասերու հարազատու-

*թեան վրայ կասկածելու. եւ անորոշութեան ճանապարհին վրայ ելք մը գտնելու համար իրարմէ տարաձայն կարծիքներու դուռ բանալ։*

*Այս բախտին արժանացած է նաեւ Սեբիոս։ Իր պատմութեան ոչ այնչափ բուն մարմինը ենթարկուած է բանասէրներու քննութեան, որչափ նախերգանքը, զոր ուրիշներ Անանուն կամ Կեղծ-Սեբէոս կ'անուանեն։ Այս կարգի գրութեանց թուին վրայ թող աւելնայ առաջիկայ գրութիւնս ալ, զոր կը ներկայացընենք աւելի ուսումնասիրութեան փորձ, քան ինքնին ուսումնասիրութիւն։*

## 1.

*Սեբէոսի Պատմութեան ձեռագիրները:* — *Սեբէոսի պատմութիւնը մինչեւ* 1842 *կը համարուէր կորսուած։ Այս թուին երեւան հանեց զայն Էջմիածնի Մատենադարանի ձեռագիրներու մէջ Յովհաննէս Վ. Շահխաթունեան, որ իր "Ստորագրութիւն կաթողիկէ Էջմիածնի եւ հինգ գաւառացն Արարատայ" կարեւոր աշխատութեան մէջ նաեւ երկար կոչումներ յառաջ բերաւ։ Ձեռագիրս ապա ձեռք առած է* M. Brosset, *որ* Rapports sur un voyage archéologique dans la Géorgie et dans l'Arménie, exécuté en 1847—1848 (1re livraison, St. Pétersbourg 1849), *էջ* 49—55 *տուած է նաեւ ամփոփ տեղեկութիւն մը պատմութեան բովանդակութեան վրայ։*

Ձեռագիրս երկու տարի ետքը (1850ին) տեսած է նաեւ Միհրդատեան (տես վարը)․ Թէեւ Ք. Պատկանեան 1878 Սեպտեմբերին հակառակ “բազում ջանիւ ի խնդիր ելելուն„ չէ կրցած վեր հանել Ձեռագիրը (Յառաջաբան Սեբիոսի) սոյն Մատենադարանիս մէջ։ Պատճառը ինչ ալ եղած ըլլայ, այն ստոյգ է, որ Ձեռագիրս չէ մտած Յ. Կարինեանցի Մայր ցուցակին մէջ (տպ. Տփղիս 1863)։

Բայց Ձեռագիրը կը գտնուի այժմ Էջմիածնի Մատենադարանին մէջ՝ Թ. 611 (Նախկին 2463), “չգիտենք որչափ ժամանակից ի վեր„ (ԱՐՐՏ. 1891, էջ 147)։ Ի լրումն Ձեռագրիս պատմութեան կ՚ընենք ենթադրութիւն մը. Ձեռագիրս վերջին անգամ կը գտնուէր Էջմիածնի “արժանաւոր գիտնական անձի„ մը ձեռքը, որ 1853ին բաղդատելով զայն տպագրին հետ, ինչ ինչ տարբերութիւններ կ՚ուղարկէր “Նոյեան Աղաւնի„ թերթի խմբագրութեան ի հրատարակութիւն (անդ, 1853, 7 Մարտ, Թ. 52), աւելի մանր համեմատութիւններ խոստանալով տալ ուրիշ առթիւ. “զոր եւ ի ժամանակի ունիմք տալ ի հրատարակութիւն յետ բաղդատութեան„։ Կ՚երեւայ այս “արժանաւոր գիտնական անձը„ Ձեռագիրը քովը պահած է ուսումնասիրելու համար եւ այնպէս հեռացուցած Մատենադարանէն (1853—1879)։

Էջմիածնի Թ. 611 ձեռագրին նկարագրութիւնը տուած է Միաբան (Գալուստ Տէր-Մկրտչեան) ԱՐՐՏ. 1891, էջ 147—155 (=հե-

ղինակին՝ Խորենացու պատմութեան ուսումնասիրութիւն, Վաղարշապատ 1896, էջ 37—45), ուսկից[1] կարեւոր կը համարիմ յառաջ բերել հետեւեալ տողերը:

Ձեռագիրն "կաշեկազմ է, կոկուած դեղնաւուն թղթի վրայ գրուած, բոլորգիր, ընտիր գրչութիւն„ 19 × 25 հարիւրորդամետր մեծութեամբ: "Այս ստուար ձեռագիրը հաւաքածոյ է պատմութեանց: Բովանդակութիւնն է՝ Ագաթանգեղոսի Պատմութիւն, Դաշանց Թուղթ, Մեծին Ներսէսի վարքը, Պատմութիւն Մովսիսի Խորենացւոյ, Պատմութիւն Եղիշէի, Պատմութիւն Ղազարայ Փարպեցւոյ, Թուղթ Ղազարայ առ Վահան Մամիկոնեան, Պատմութիւն Սեբէոսի, Պատմութիւն վարուց եւ մահուան սրբոյն Մեսրոպայ՝ Կորեան: Այս վերջին երկուսը վերնագիր չունին:„

Երկին գրչութիւն կայ Ձեռագրիս մէջ. Պօղոս երէց Գաւըռոցի օրինակած է Ա. Մասը՝ մինչեւ Եղիշէի վերջը. իսկ Բ. Մասը՝ Ղազար Փարպեցւոյ, Սեբէոսի եւ Կորեան գործերը օրինակած է Գրիգոր երէց, թէպէտ դարձեալ բոլորգիր, բայց աւելի անվարժ եւ տգեղ, երկուքն ալ ի խնդրոյ եւ ի վայելումն Վարդան Վ. Բաղիշեցւոյ, հաւանօրէն Բաղէշ, Ամրտօլու վանքը: Ա. Մասի գրչութեան ժամանակն է, ինչպէս

---

[1] Ձեռագրիս մասին հմմտ. նաեւ Գ. Տէր-Մկրտչեան՝ Ղազար Փարպեցու ձեռագրերը. ԱՐՐՏ 1901, էջ 542—549. Ղազարայ Փարպեցւոյ Պատմ. Հայոց, Տփղիս 1904, էջ Ե—Զ:

*բազմաթիւ յիշատակարանները կը յայտնեն Հայոց ՌՃԻԱ = 1672 թուականը (Հմմտ. ԱՐՐՏ., էջ 148—149)։ Զմեզ կը հետաքրքրէ այս տեղ աւելի Բ. Մասը։*

*Ձեռագրի այս երկրորդ մասի գրիչն է Գրիգոր երէց. կ'ըսուի. “Աւարտեցաւ գիրքս Ղազարու Վ.ի Փարպեցւոյ ձեռամբ բազմավէր եւ անարժան գրչի Գրիգոր երիցու, ի հարկէ սրբազան եւ քաջ վարդապետին Վարդան դիտապետի„։ Գրիգոր երիցու յիշատակարանը թուական չունի. մեր Մատենադարանի Թ. 257 (Ղազար Փարպեցւոյ Թուղթը) որ օրինակուած է այս Ձեռագրէն, յիշատակարանիս կը կցէ. “Արդ օրինակեցաք գիրքս այս ի թուին Հայոց ՌՂԱ (= 1642) ի Բաղէշ ի վանս Յովհանու կարապետի„ (Տաշեան, Ցուցակ, էջ 657)։ Եթէ հարազատ է այս յաւելուածը յիշատակարանին, կը հետեւի թէ ձեռագրին Բ. Մասը (Ղազար Փարպեցի եւ Սեբիոս) օրինակուած է Ա. Մասէն 30 տարի յառաջ. բայց ինձի կասկածելի կը թուի այս, վասն զի Գրիգոր երէց այլուր (Սեբիոսի Պատմութեան վերջը) յայտնապէս կը նշանակէ գրութեան տարին 1672.*

*“Զյետին ի գրչաց եւ զառաջինս ի մեղաւորաց՝ զանարժան զանարհեստ եւ զանիմաստ զԳրիգոր երէցս արժանի առնել աղաչեմ զձեզ ով սուրբ ընթերցողք միով ողորմիայիւ... ամէն։ Արդ գրեցաւ սա ի թուին ՌՃԻԱ (1672) ի Բաղէշ՝ ի վանս Յովհաննու կարապետի„ (Միաբան՝ ԱՐՐՏ., էջ 154, սկզբնաւորութիւնն միայն յա-*

ռաջ բերած է. ամբողջութեամբ տե՛ս Սեբիոսի Ա· տպ., էջ 240)։

Ղ. Փարպեցւոյ եւ Սեբիոսի դրացիութիւնը Ձեռագրիս մէջ կը յիշեցնէ մեզի այն հնագոյն օրինակը զոր ունեցած է աչքի առջեւ Սիմէոն Ապարանեցի. եւ կը կարծենք թէ ճիշդ այս հնագոյն օրինակն եղած է այն նախագաղափար ձեռագիրը, որուն վրայէն օրինակուած է առաջինկայս։ Այս ձեռագիր օրինակի որպիսութեան մասին հետեւեալ կարեւոր ծանօթութիւնս կը հաղորդէ Գրիգոր երէց Ղ. Փարպեցւոյ թղթին վերջը, Սեբիոսէն յառաջ, որ թէեւ յատկապէս Ղազար Փարպեցւոյ Պատմութեան եւ Թուղթի մասին ըսուած է, բայց կ'արժէ նաեւ Սեբիոսի համար, քանի որ անիկա նախորդին անբաժին մասը նկատուած է (տե՛ս այս մասին վարը)։

“...Ով սուրբ ընթերցաւղք եւ եղբարք. գիրքս հին էր եւ աւրինակս։ Յունան վարդապետն կարդացեալ էր զաւրինակն եւ նորոգեալ, եւ զպակասութիւն թղթոցն՝ որ պակասէ՝ ոչ էր գտեալ, եւ ես ոչ կարացի գտանել. աղաչեմ զամենեսեան, եթէ գտցի այս ուրեք՝ գրեսջիք զպակասումն թղթոյս եւ դիք ի սմայ. նախ զսկիզբն գրոցս, եւ ապա յերիս տեղիս թուղթ մի անկեալ կայ։ Եթէ սխալ գտջիք ի սմա՝ թողութիւն խնդրեցէք ինձ ի Քրիստոսէ յանցանաց իմոց„ (ԱՐՐՏ., էջ 152)։

Գրիգոր երիցու 1672ին Բաղէշ տեսած այս հին եւ կազմալուծուած ձեռագիրը թէ ե՞րբ եւ ո՞ւր գրուած էր, նոյնպէս թէ ո՞ւր կը գտնուի

այժմ, յայտնի չէ։ Բայց այն էր հաւանօրէն այն ձեռագիր օրինակը, զոր ԺԵ· դարու առաջին քառորդին ձեռքի տակ ունէր Սիմէոն Ապարանեցի իւր "Վիպասանութիւնը" գրելու ժամանակ, բայց ըստ երեւոյթին այն եւս քայքայեալ եւ պակասաւոր ձեւի մէջ էր, գրեթէ այն կերպարանաց տակ, ինչպէս Էջմիածնի Թ. 611, որուն մէջ "Սեբիոս եւ կորիւն չունին հեղինակի անուան յիշատակութիւն" (ԱՐՐՏ· 1901, էջ 543)։ Նաեւ Սիմէոն Ապարանեցի չէ տեսած Սեբիոսի անունը գրքին ճակատը, որով չէ կրցած իմանալ անոր հեղինակն, զոր համարած է Ղ. Փարպեցի (Հմնտ. Հանդ. Ամս. 1919, էջ 89)։

Գրիգոր երիցու ձեռագրէն ծագած Սեբիոսի օրինակ մը ունեցած է Ներսէս Ե· Կաթողիկոս, զոր 1850ին տեսած է Թադէոս Միհրդատեանց ի Տփղիս "որ օրինակեալն էր ի բնագրէն՝ որ ի Ս· Էջմիածին"։

Միհրդատեանց այս օրինակէն արտագրութիւն մը կը խնդրէ. "եւ վեհափառութիւնն Նորին շնորհեաց մեզ. եւ յետոյ ի գնալն մերում ի Ս. Աթոռն՝ բաղդատեցաք ընդ բնագրին՝ յորում կայր ի մասին Քրոնիկոնին պակաս յերկուս տեղիս. առաջինն գրեալ էր. "չորս տող պակաս է". երկրորդին՝ "եօթն տող պակաս". եւ "տարբերութիւնք ինչ ժամանակաց" (Ա. տպ., էջ ԺԴ)։ Այս օրինակը "զոր արարաք մեզ բնագիր, զոր ընկալեալն էաք ի սրբոյ վեհէն . . . որ էր գրեալ ՌՃԻԱ թուոյն ի Բաղէշ ի վանս Յովհաննու կարապետի" (անդ, էջ ԺԱ)։

Այս տեղեկութիւններէն կը տեսնուի ուրեմն թէ Ներսէս Ե. կաթողիկոսի օրինակը ծագած է ուղղակի Էջմիածնի թ. 611էն: Այս օրինակէն արտագրուած է Միհրդատեանցի բնագիր ընտրած օրինակը, զոր բաղդատած է ապա Էջմիածին Նախագաղափարին հետ:

Միհրդատեանց ունեցած է երկրորդ օրինակ մ՚ալ “Հապճէպով իմն օրինակեալ յԷջմիածին„ (հմմտ. մեր թ. 86) օրինակութիւնս կատարած են Էջմիածնի Միաբանները նոյն թ. 611 ձեռագրէն (հմմտ. Մասիս 1853, թ. 64 Միհրդատեանցի խոստովանութիւնը): Այս օրինակի վրայէն արտագրուած է հաւանօրէն մեր Մատենադարանի թ. 52, Սերովբէ Պետրոսեանէ 9 Յուլիս 1851 Կ. Պոլիս, որ այսպիսի դիտողութիւն մը կցած է իր օրինակութեան.

“Օրինակ մեր էր գրեալ ի թուին ՌՃԻԱ (1672), ի Բաղէշ ի վանս Յովհաննու Կարապետի ձեռամբ Գրիգորոյ երիցու. եւ ուշ եդաք հաւատարիմ եւ զգուշաւոր գրչութեամբ հետեւող եւ նմանող լինել նմին ըստ ամենայնի եթէ ի կիտադրութիւնս, եւ թէ ի տնատութիւնս. նա եւ ի յայտնի սխալանս իսկ բառից եւ տառից. եւ յետոյ աւարտելոյ դարձեալ բաղդատեցաք ընդ գաղափարին ուղղել զմեր վրիպակս, որպէս զի լիցի ամենայնիւ համազօր նմին, մինչեւ յանկարծելի խորշէ այլ օրինակ յերեւան ելեալ ուղղագրեսցէ զսա: ...Եւ զի ուրեմն [Միհրդատեա՞նց] սրբագրեալ էր զսա ի բազում տեղիս բայց առանց եղծանելոյ զընա-

բանն, մեք զնորա կարծիս դուն ուրեք եդաք ի լուսանցսն. եւ ուրեք ի բնաբանին առաջ բոլոր գրով ի փակագծի„ (Ցուց. 249—250)։

Միհրդատեանց իւր առաջին օրինակութենէն կ'երեւայ թէ հանած է ուրիշ օրինակներ եւս, որոնցմէ մին հիմ եղած է մեր Մատենադարանին Թ. 86 ձեռագրին, որ բաղդատութիւն մըն է այս անծանօթին եւ Թ. 52ին. տարբերութիւնները շատ աննշանակ են։

Միհրդատեանց տեսած է ուրիշ օրինակ մ'ալ, որուն մէջ "չգոյր յիշատակարան, եւ էր թերի. որ էր բոլոր գրով՝ հին թուղթ բամբակեայ. եւ թուի թէ ի վեշտասաներրորդ դարու գրեալ իցէ. բայց ամենայն մասամբ մաքուր գրութիւն ի հմուտ գրչէ. կայր եւս ի միջի նորին աղօթք... Ս. Յակովբայ Մծբնացւոյ վասն մահ տարաժամի... եւ գոյր ի վերջն զայս յիշատակարան. Արդ գրեցաւ... թուին ՌԺԷ (1567) ի սուրբ եւ տիեզերական ուխտս Մարմաշինու վանաց. ձեռամբ յոգնամեղ եւ անարդիւն գրչի տէր Յուսիկ կոչեցելոյ...„ (էջ Ժ)։ Այս օրինակը կը հասնէր մինչեւ Ա. տպագրութեան 215րդ էջը (= Բ. տպ., էջ 137. վերջին տող)։ Միհրդատեանց որ զայս "միւս օրինակ„ կ'անուանէ, էջ 200 դիտել կու տայ որ "ի միւսում օրինակին անկեալ էր թուղթ մի ի տեղւոջէս յայսմանէ„։ Ձեռագրիս թէ ո՞ւր պատահած է Միհրդատեանց, ակնարկութիւն չ'ըներ. մեզի շատ կասկածելի կը թուի անոր գոյութիւնը, մանաւորապէս գրչութեան հնու-

թիւնը, այնու որ ըստ ամենայնի կը համընթանայ Թ. 611ին եւ անկասկած է անոր ասկէ ծագումը եւ այն ոչ կանուխ քան 1650 թուականը, յամենայն դէպս Յովհան վարդապետի նորոգելէն ետքը։ Պատկանեան, որ 1878 Սեպտեմբերին փնտռած էր Էջմիածնի Մատենադարանին մէջ Միհրդատեանցի յիշած այս կրկին օրինակները, "ոչ գտայ, կը գրէ, զայն (=Թ. 611) ...եւ ոչ զայլ հնագոյն օրինակն, զոր յիշատակէ հրատարակիչն" (էջ Ա)։

Պատկանեան իւր հրատարակութեան համար ձեռքի տակ ունեցած է ուրիշ օրինակ մ'ալ, զոր գտած է Պետերբուրգի Գիտութեանց կայսերական ճեմարանի մէջ։ Դժբախտաբար ձեռագրիս որպիսութեան մասին չէ հաղորդած մանր տեղեկութիւն, բայց այն եւս կը թուի թէ ծագած է Էջմիածնի Թ. 611էն ուղղակի կամ անուղղակի ճամբով։

Ամփոփելով մեր ստացած տեղեկութիւնները Սեբէոսի ձեռագիրներու մասին, կը տեսնուի թէ նախագաղափար օրինակն եղած է



Այսպէս Սեբիոսի բոլոր ծանօթ օրինակները կը յառաջագային Յունան վարդապետի ձեռքը գտնուած հին, քայքայեալ, պակասաւոր ձեռագրէն, զոր անիկա “Նորոգեալ եւ զպակասութիւն թղթոցն որ պակասէ ոչ էր գտեալ„։ Ինչպէս Ղազար Փարպեցւոյ Թղթէն եւ աւելի պայծառ Սեբիոսէն կը տեսնուի, Ձեռագրէն ոչ միայն թղթեր ինկած կորսուած են, այլ եւ քայքայուած, ցրուած թղթերը անյաջող կերպով քովէ քով բերուած զետեղուած են։ Թէ Ղ. Փարպեցւոյ Թղթին եւ թէ Սեբիոսի Պատմութեան տեղափոխուած թերթերը իրենց սկզբնական տեղերը զետեղելու համար շատ կարեւոր էր ունենալ Յունան վարդապետի Նորոգած ձեռագիրը եւ կամ անոր գրչութեան մասին տեղեկութիւններ ունենալ. միասի՞ւն էր թէ երկսիւն. տողերու թիւը եւն։ Գրչութիւնը միջին Մեսրոպեան գրով եղած կը թուի. դատելով սխալ ընթերցումներէն։

Այս հնացած Ձեռագրին մէջ ոչ միայն թղթեր ինկած կամ տեղափոխուած են, այլ եւ շատ մը տողեր մաշած անընթեռնլի եղած են, զորոնք Գրիգոր երէց առ ի չգոյէ լաւագոյն օրինակի չէ կրցած լրացնել։ Կը տեսնուի թէ Ձեռագիրն 1567ին (կամ “միւս օրինակին„ գրչութեան տարին) աւելի լաւ հանգամանաց մէջ եղած է, քան 1672ին, գոնէ Սեբիոսի էջ 13, 33—14, 1, 4 տող եւ էջ 15, 1—9, 7 տող, անընթեռնլի տեղիք “միւս օրինակին„ գրութեան տարին դեռ կը կարդացուէին։ “Միւս

օրինակը„ ինչ ինչ կէտերու մէջ օգտակար ծառայութիւն կրնար մատուցանել թերեւս Սեբէոսի բնագրին քննութեան համար, եթէ ունենայինք անոր աւելի խնամով բաղդատութիւնը, քան որ կատարած է Միհրդատեանց։

Ինծի կ'երեւայ թէ Յունան վարդապետ տեղ տեղ մուծած է նաեւ լուսանցագրութիւններ կամ յաւելուածներ. իր գրչէն կը համարիմ օրինակի համար էջ 16, 20—27 տողերը եւ Խորենացիէն եւ “Ասողիկէն„ յառաջ բերուած հատուածները էջ 10—11, զորոնք քաղած է առ ձեռն աղբիւրներէ կարծեցեալ պակասն (ի մասին Պարթեւ եւ Հայ Արշակունեաց) լրացնելու։

Ասկէ ծագած միւս բոլոր օրինակութիւնները անբաւական են Սեբէոսի բնագիրը վերականգնելու համար։ Բայց իրաց այս վիճակի մէջ մինչեւ հնագոյն օրինակի գիւտը աւագ նշանակութիւն կը ստանան Էջմիածնի Թ. 611 եւ “Միւս օրինակը„։ Առ այժմ հարկ է մանր բաղդատութեան առնուլ Թ. 611, որուն անդրագոյն քննութիւնը կրնայ բաղձալի լուսաւորութիւն տալ Սեբէոսի բնագրին շուրջը։ Տարաբաղդաբար Միաբան, որ այնպէս մանրամասնութեամբ ուսումնասիրած է Ձեռագիրս, ճիշդ Սեբէոսի Պատմութեան քով դիմած է համառօտութեան։ Այս նկատմամբ հարկ է բաւականանալ առ այժմ Brossetի տուած տեղեկութիւններով։ Ըստ Բրոսէի Սեբէոսի Պատմութիւնը կը գրաւէ Ձեռագրին մէջ 123 էջ (սկսելով թղ. 487ա,

Հմմտ․ ԱՐՐՏ․ 1901, էջ 542)․ Բրոսէ երկու տեղ միայն կը յիշատակէ Թերոյթ ձեռագրին մէջ, էջ 10 (= տպ․ 13, 12 կամ 15) ուր 4 էջ դատարկ մը կայ, հոն ուր կը սպասուէր 228—268 շրջանի Հայ, սասանեան եւ հռովմէական իշխողներու ժամանակագրական արքայացանկը, եւ դարձեալ էջ 16/17 (= տպ․ էջ 21) իբր 7—8 էջ դատարկ մը, որուն բովանդակութիւնն անծանօթ կը մնայ մեզի, եթէ իրօք Թերոյթ Մ'ունի ձեռագիրը, որուն վրայ կրնայ կասկածուիլ: Զարմանալի է որ այս պակասներու մասին միւս ձեռագիր եւ տպագիր աղբիւրներն ակնարկութիւն չունին:

## 2.

*Տպագրութիւններ:* — Սեբէոսի Պատմութեան անդրանիկ հրատարակութիւնը տուաւ Թադէոս Միհրդատեանց՝ “Պատմութիւն Սեբէոս եպիսկոպոսի ի Հերակլն, Կ․ Պոլիս 1851, 8°, էջ ԻԸ + 241:

Հրատարակութեանս բնագիր ընտրուած է այն ձեռագիրը, զոր հրատարակիչը հանած էր 1850ին Տփղիս Ներսէս Ե․ Կաթողիկոսի օրինակէն: Զայն բաղդատած է ապա Էջմիածնի Թ․ 611ի եւ իբր 1587ին գրուած պակասաւոր օրինակին հետ, զոր անուանած է “միւս օրինակ„: Անհմուտ հրատարակիչը ոչ միայն չէ յաջողած վերականգնել բնագիրը, մաքրելով

ղայն ընդօրինակողներու անիմաստ վրիպակներէն, այլ եւ հոգ տարած չէ հաւատարմութեամբ ներկայացնել ձեռագիրներու տարբեր ընթերցուածները (հմմտ. Նոյեան Աղաւնի, 1853, թ. 52, «Սխալ տպագրութիւն Սեբէոս մատենին, ի լոյս ընծայելոյ ի 1851 ամի, անհամաձայն ընդ բնագրին եղելոյ յԱթոռն Էջմիածին, յորմէ առեալ է զօրինակ տպագրելոյն, որպէս [ասէ] ի յառաջաբանին իւրում»): Ըստ քմաց բաժնած է բնագիրը երեք դպրութեանց եւ երրորդ դպրութիւնը Ա.—ԼԸ. գլուխներու, որոնց կցած է նաեւ գլխակարգութեան բովանդակութիւն. ասոնք անծանօթ են ձեռագրին:

Երկրորդ տպագրութիւնը հոգաց Ք. Պատկանեան՝ «Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն եւ սկիզբն Նորագիւտ Պատմութեան Մխիթարայ Անեցւոյ. ի լոյս ած Ք. Պ(ատկանեան)», Ս. Պետերբուրգ 1879, 8°, էջ Զ+203, կից Մխիթար Անեցւոյ Պատմութիւնը, էջք 72:

Հրատարակութիւնս կատարած է Պատկանեան «յետ մանրակրկիտ բաղդատութեան տպագրելոյն ի Կ. Պոլիս ընդ Նորագոյն գրչագիր օրինակի կայսերական ճեմարանին Գիտութեանց ի Ս. Պետերբուրգ»: Նաեւ Պատկանեան չէ անդրադարձած գրչութեան պէսպէս վրիպակներու եւ թղթերու ետեւառաջութեանց, որոնք այնպէս կը խանգարեն Սեբէոսի պատմութեան ուղիղ իմացումը: Սակայն անհամեմատ ընտիր է այս հրատարակութիւնը բաղդատութեամբ նա-

խորդին, թէեւ շատ տեղ պահպանուած են Միհրդատեանցի սայթաքումները։

Սեբէոսի Պատմութեան այն մասը, որ սովորաբար Անանունի կամ կեղծ-Սեբէոսի կը վերագրուի, վերակազմել փորձեց Հ. Ա. Մատիկեան իւր «Անանունը կամ կեղծ-Սեբէոսը» գործին մէջ, Վիեննա 1912, էջ 73—91, ուր համեմատութեան առնուած են նաեւ մեր Մատենադարանի թ. 52 եւ 86։

Թարգմանութեանց մասին տես վարը։

## 3.

*Պատմութեան խորագիրը։* — Էջմիածնի թ. 611 ձեռագրին մէջ, ինչպէս զայն տեսնողներն՝ Բրոսէ եւ Միաբան կը հաւաստեն, ոչ վերնագիր եւ ոչ հեղինակի անուն կը կրէ Պատմութիւնը. այսպէս առանց խորագրի եւ անուան տեսած է նաեւ Սիմէոն Ապարանեցի 1585ին եւ Վարդան Բաղիշեցի[1] (Էջմ. թ. 611ի

[1] Վարդան Բաղիշեցի Ամրտոլու վանքին ձեռագիրներու ցուցակին մէջ կը նշանակէ թիւ «ԺԲ. մէկ Մովսէս պատմագիրք՝ Ագաթանգեղ, Մովսէս, Եղիշէ, Ներսէսի պատմութիւն, Ղազարու Փարպեցոյ եւ Խոսրովու»։ Հմմտ. «Այս են վարդապետական գրեանք ի վանքն Ամրդոլու՝ համարով առ ջինջ յիշատակ գրեալ իմով ձեռամբ Վարդանայ վարդապետին»։ Հրտ. Ս. Տէր-Յակոբեան, ԱՐԲՏ. 1903, էջ 178։ Ձեռագիրն առանց տարակուսի Էջմիածնի թ. 611ն է, միայն բովանդակութեան կարգն ետեւ առաջութեամբ նշանակուած է։ Սեբէոս լռուած է. իսկ «Խոսրովու» իմանալու է «Կորեան վարք Մաշտոցի»։ Եթէ ճիշդ է որ Եղիշէ

ստացիչը), թէեւ Միհրդատեանց կը վկայէ թէ Ներսէս Ե. կաթողիկոսէն ստացած օրինակը "ի սկիզբն„ կը կրէր խորագիրս "Սեբէոս եպիսկոպոսի ի Հերակլն„. իսկ "միւս օրինակն„ ունէր ճակատը՝ "Պատմագիրք Սեբէոսի ի Հերակլն„ (էջ Ժ—ԺԱ)։ Մեր մատենադարանի Թ. 52 գիտէ. "Սեբէոսի Հայոց եպիսկոպոսի պատմութիւն ի Հերակլ կայսր„ (Թղ. 2ա), իսկ այլուր (Թղ. 50բ) ի լուսանցս ունի "Սեբէոս ժամանակակից առաջին իսմայէլացւոց„։

Կ'ենթադրեմ թէ Ներսէս կաթողիկոսի ձեռագրին խորագիրը աւելցուած է Յովհ. Շահխաթունեանցէ, որ իւր "Ստորագրութեան„ մէջ էջ 134, 285 եւն) առանց վարանելու վերագրած է պատմութիւնս "Սեբէոս Բագրատունեաց եպիսկոպոսի„, որուն հետ հաւան է նաեւ Բրոսէ (Rapports, էջ 49)։ Շահխաթունեանց հաւանօրէն մղուած է այսպիսի նոյնացման մասամբ նկատելով որ պատմագիրն Սեբիոս ժամանակակից կ'իյնայ Դունոյ 645ի ժողովին, որուն մասնակից էր Բագրատունեաց Սեբէոս եպիսկոպոսը, եւ մասամբ յեցած հին պատմագիրներու վրայ, որոնք կը յիշեն զայն այսպէս. "Պատմութիւն Հերակլի„ (առանց հեղինակի անուան), Ուխտ. Բ, էջ 56. "Պատմութիւն Հերակլի, որ ի Սեբիոսէ (այսպէս Ձեռագիրը, տպ. Սեբէոսէ) եպիսկոպոսէ ասացեալ„, Ասողիկ, էջ 7. "Հերակլն ի Սեբիոսէ եպիսկո-

Գոնդաքճեան տեսած է ձեռագիրը (Հմմտ. էջ 179, ծն. 1), այն ըլլալու է նախաբնագիրը։

պոսէ ասացեալ„, Սամ. Անեցի, էջ 3. “Եւ Սեբիոս որ Հերակլին է„, Մխիթար Անեցի, էջ 15. “Եւսեբի որ ի Հերակլն„, Մխ. Այրիվանեցի, էջ 37. “Հերակլն ի Սեբիոսէ ասացեալ„, Կիր. Գանձակեցի, էջ 3. եւ վերջապէս “Հերակլ յԵւսեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ սակս պատերազմացն Հերակլի եւ Խոսրովու եւ այլ բանք պիտանիք„, Այուբեան՝ ի Պատմ. Հայ Լրագրութեան Ա, էջ 206։

Հայ պատմագիրներու այս հաւաքական վկայութիւնը անկասկած կը վաւերացնէ Շահխաթունեանցի նոյնացումը եւ Միհրդատեանցի ընտրած խորագիրը, մանաւանդ եթէ “միւս օրինակն„ իւր վերնագրով երաշխաւորած ըլլայ առ այս։ Ինձի սակայն դարձեալ կասկածելի կը թուի “միւս օրինակի„ տուած ընթերցուածը, գոնէ հնութեան կնիք չի կրեր հեղինակին “Սեբէոս„ յորջորջանքը։

Պատմութեանս հարազատագոյն խորագիրը կը համարիմ, հիմնուած Ուխտանէսի եւ Ասողիկի վրայ, “Պատմութիւն Հերակլի ի Սեբիոսէ եպիսկոպոսէ ասացեալ„։

Հեղինակին անունը — Ասողիկ, Սամուէլ, Մխ. Անեցի եւ Կիրակոս միաբան “Սեբիոս„ գիտեն. միայն Մխ. Այրիվանեցի “Եւսեբի„ եւ Այուբեան “Եւսեբիոս„ կը ճանչնան։ Անշուշտ կամ վերջիններս լրացուցած են Սեբիոսը Եւսեբիոս ձեւով[1], եւ կամ առաջին-

---

1 Հ. Ց. Գաթըրճեան եւս, Մասիս 1852, Թ. 13 Եւսեբիոսէ կ'ածանցէ։

ները կրճատած են *Եւսեբիոսը Սեբիոսի*, ինչպէս պատահած է նման դէպքերու մէջ *Եւստաթէոս* — *Ստաթէոս*, *Եւգրաբոս* — *Գրաբոս* եւն անուններու շուրջը։

Ցամենայն դէպս հարազատագոյն ձեւն՝ ծանօթ հնագոյն պատմագիրներու՝ *Սեբիոսն* է։ Թէ ի՞նչպէս շրջուած է անունս *Սեբէոսի*, ասոր եթէ ոչ բացատրութիւնը բայց ծագումը կու տան հին կանոնագիրք։ *Սեբէոս* անունը ծանօթ է հայ մատենագրութեան մէջ միայն Դունայ 645ի ժողովին ներկայ գտնուող եպիսկոպոսներու ցուցակէն, ուր Բագրատունեաց եպիսկոպոսին անունը կը յիշատակուի ըստ զանազան ընթերցման ձեռագրաց՝ *Սեբէոս*, *Սեբիոս* ձեւերով (հմմտ. կանոնք Դունայ Ա. ժողովոյն, հրտ. Մխիթար վրդ. եւ Ա. Տիգրանեան, Վաղարշապատ 1905, էջ 27)։ Հրատարակիչները՝ հիմնուած ձեռագիրներու մեծաձայնութեան վրայ՝ բնագրին համար նախընտրած են *Սեբէոս* ձեւը, որ իրենց ընտանի էր նաեւ այլուստ։ Բայց մեզի համար ուշագրաւ է որ adet ձեռագիրները իրենց ձայնակից ունենալով մեր Մատենադարանի Թ. 58 կանոնագիրքը, կու տան *Սեբիոս* ընթերցուածը։

Եթէ Չամչեան (Բ, էջ 345) նախընտրած է Սեբէոս ձեւը, եւ իւր հեղինակութեամբ վաւերական ճանչցուցած է զայն յաջորդ շրջանին եւ մոլորցուցած է Շահխաթունեանը եւ Միհրդատեանցը, բայց այս հեղինակութիւնը չի կրնար այլ եւս ճոխութիւն վայելել, երբ հնագոյն

պատմագիրները ականակիտ աղբիւրէ կազդուրուած՝ միաբան *Սեբիոս* կ՚աղաղակեն։ Թէեւ ընտելացած է այժմ մեր ականջներուն *Սեբէոս* անունը, եւ դժուարաւ պիտի ուզենք հրաժարիլ անկէ, բայց արդարութեան է իւրաքանչիւրին տալ իւրը. հարկ է ընդգրկել հարազատագոյնը՝ *Սեբիոս*[1] (կամ լաւ եւս՝ Եւսեբ[illegible] հրաժեշտ տալ *Սեբէոսի*, որ յառաջաց[illegible] աղաւաղմամբ՝ կանոնագրքի օրինակողի մը ահմտութենէն։

*Սեբիոսի կենսագրութիւնը։* — Սեբիոս հին պատմագիրներու (Ասողիկ, Սամուէլ, Այու-բեան) քով կը ներկայանայ *եպիսկոպոս* տիտղոսով, առանց թեմի յորջորջման։ Նկատելով որ պատմագիրն Սեբիոս ապրած է Է. դարու երկրորդ եւ երրորդ քառորդին եւ Դուինոյ 645ի ժողովին ներկայ եպիսկոպոսներու թուին մէջ կը յիշուի "Տէր Սեբիոս Բագրատունեաց եպիսկոպոս", չկայ մասնաւոր պատճառ ժխտելու երկու անձնաւորութեանց նոյնութիւնը, ինչպէս արդէն նոյնացուցած է ժամանակին Շահխաթունեան (էջ 285) եւ ընդունուած է առ հասարակ։

Դժբախտաբար Սեբիոսի կեանքի եւ գործունէութեան մասին յիշեալ տողերէն զատ չունինք ուրիշ մանրամասնութիւններ հին պատմագիրներու քով։ Հարկ է ձեռք առնուլ իր

---

1 Արդէն Զարպհանալեան՝ Պատմ. Հայկ. Հին Դպր. Գ տպ., էջ 435, Ալիշան՝ Հայապատում, Ա, էջ 164 նախընտրած են այս կոչումը։

պատմագիրքը. բայց հոս ալ շատ չնչին են հաղորդուած տեղեկութիւնները:

Էջ 1 պատմելով ի Մծուրք «յապարանսն Սանատրուկ արքայի՝ հանդէպ դրան արքունական տաճարին» «յաւերածի արքունական կայենիցն» հրամանաւ «Պարսից արքային» կատարուած պեղման մը մասին, որ «զսիւնս տաճարին այնորիկ խնդրեալ էր ի դուռն», կը յաւելու թէ սիւներէն մէկուն վրայ երեւան ելած է Ագաթանգեղեայ փորագրած յունարէն մէկ արձանագրութիւնը, «զոր իմ զտեալ (տպ. կ'աւելցնէ «ի Միջագետս», զոր չունին Էջմ. Թ. 611 եւ մեր Թ. 52 եւ ջնջելի է) ի Նորին դաստակերտսն (տպ. աշակերտացն), կամեցայ ձեզ զրուցակարգել[1]. քանզի այս սիւն (տպ. քանզի այսու) ունէր վերնագիրն այսպէս...»: Հոս «Պարսից արքայն» հաւանօրէն Խոսրով Ապրուէզն է, որ թագաւորեց 590—628. իսկ «դուռն արքունի» կամ «Նորին (Խոսրովու) դաստակերտն» կ'ակնարկէ Տիզբոնի արքունիքը: Թէ ստուգիւ գտնուած է Սեբէոս Տիզբոնի արքունիքը, այն յայտնի է նաեւ հետագայ վկայութենէն (էջ 12), ուր խօսելով Մամիկոնեանց վրայ կը գրէ. «Ոչ են սոքա որդիք ազգածինն Արամանեկայ, այլ են եկեալ ի Ճենաստանէ... որպէս լուայ յառնէն մեծէ որ եկեալ էր հրեշ-

1 Թէ ասոնք Սեբէոսի մատանց կը վերաբերին, ասոր եւ խօսքն իր անձին շուրջն է՝ կ'ապացուցանէ ոճը. Նոյն բանաձեւը կը կրկնէ նաեւ էջ 24. «Զայս ամենայն ճառեցայ ի ձեռն գրոյս... յետ վերադառնալ»:

տակութեամբ ի ճենաց Թագաւորէն առ արքայն Խոսրով, յոր իմ հարցեալ ի դրանն արքունի եթէ ազգ մի մեծ ի Հայաստան երկրի կայ, զորմէ ասեն եթէ ի ձերմէ աշխարհէն գնացեալ են...» Թէեւ դարձեալ չէ նշանակուած թէ ով է «արքայն Խոսրով» եւ ուր կը գտնուի այն «Դուռն արքունի», բայց ամենայն հաւանականութեամբ խօսքը Պարսից Ապրուէզ Խոսրովու մասին[1] է։ Ուստի այս շրջանին (590—628) պատահած ըլլալու է հեղինակը Խոսրովու արքունիքը ի Տիզբոն, եւ հոն խօսակցած ճենաց դեսպանին հետ։ Խոսրովու օրով Բագրատունի տունը մեծ պատիւ կը վայելէր Պարսից արքունիքը՝ երբ Վրկանի Բագրատունի մարզպանը՝ Սմբատ Շնումն (✝ 617) արքայից արքայի Դրան մէջ երրորդն էր պատուով (հմմտ. իմ Սիւրիոն կաթողիկոս Վրաց, էջ 157—163)։ Կրնայ մտածուիլ որ առթիւ Սմբատի արշաւանքներու ի Վրկանս եւ ի Տաբարաստան, ճենաստանէն դեսպանութիւն մ'եկած ըլլայ Տիզբոն։ Իսկ Սեբիոս գացած է Տիզբոն կամ իբրեւ զինուոր, կամ իբրեւ ազգական մը Սմբատայ՝ ըլլալով Բագրատունի տնէն կամ երկրէն, եւ կամ թերեւս իբրեւ եկեղեցական՝ առթիւ Սմբատի նշխարներուն փոխադրութեան ի Դարոնք կոգովիտի (617)։ Այն պարագան որ Սեբիոս այնպէս մանրապատում կը պատմէ Վըր-

---

1 Հմմտ. եւ Ս. Մալխասեան, Սեբէոսի Պատմութիւնը եւ Մ. Խորենացի, Թիֆլիս 1899, էջ 98։

կանի Մարզպան Սմբատի քաջութեանց մասին, թոյլ կու տայ ենթադրելու թէ պատմիչն հետեւած է մօտէն անոր քայլերուն, իբրեւ ականատես կամ ականջալուր։

Պատմիչն իր մասին երրորդ անգամ ակնարկութիւն կ'ընէ էջ 110, ուր պատմելով Արաբացւոց արշաւանքներն եւ նուաճումները "յԵգիպտոսէ մինչեւ ցլեառն Տաւրոս, եւ ի ծովէն արեւմտից մինչեւ ցՄարս եւ Խուժաստան" 640—641 տարիներուն, կը յաւելու թէ այս մասին տեղեկութիւններ հաւաքած է այն կողմերէն բերուած գերիներէն. "Զայս լուաք յարանց գերելոց ի Խուժաստանէ Տաճկաստանէ, որոց ինքեանք իսկ ականատես եղեալ պատմեցին մեզ զայս բան", հաւանօրէն Հայաստանի մէջ, ուր եկած էին անոնք թերեւս Արաբացւոց հետ։

Այս միջոցին Սեբիոս արդէն Բագրատունեաց[1] եպիսկոպոս ձեռնադրուած ըլլալու էր, վասն զի քիչ ետքը՝ 645 թուին Ներսէս Շինողի գումարած Դունայ ժողովին ներկայ էր իբրեւ "Տէր Սեբիոս եպիսկոպոս Բագրատունեաց"։ Ուշադրութեան արժանի է, որ առաջին անգամ այս դէպքին կը յիշուի Բագրատունեաց եպիսկոպոսանիստ թեմը։ Հաւանօրէն Կոգովիտն էր Բագրատունիքը, իսկ եպիսկոպոսանիստ քաղաքն՝ Դարօնք բերդաւանը, ուր էր Բագրատունի տան

1 V. Langlois, Coll. des hist. arm. I, p. 195, համարած է զՍեբիոս "եպիսկոպոս Մամիկոնեանց". իրեն հետեւած է Macler, Pseudo-Sebeos, p. 5, բայց անճշդութեամբ։

գլխաւոր բերդը եւ միեւնոյն ժամանակ հանգստարանը (Սեբ. 68, 116, 117)։ Երբ սկսան Բագրատունիները օր աւուր ամրապնդել իրենց քաղաքական դիրքը, կ'երեւայ թէ ուզեցին նաեւ եկեղեցական տեսակէտով ճոխութիւն մ'ունենալ, եւ հաստատեցին Բագրատունեաց եպիսկոպոսական թեմը, նմանելով յայսմ Մամիկոնեաններու (հմմտ. Մերշապուհ եպիսկոպոս Մամիկոնենից եւն), որոնց մրցակիցն էին արդէն քաղաքական ասպարիզի վրայ։

Սեբիոս իր պատմութիւնը կը հասցնէ մինչեւ 660 թուականը եւ կը կնքէ յոռետես վերջաբանութեամբ ապագայի մասին։ Թէեւ իր տեսութիւնները արդարացուց ապագայ ժամանակը, բայց նա հաւանօրէն չապրեցաւ այդ օրերը. Պատմութեան հետ ի մայր խոնարհեցաւ նաեւ իր կեանքի արեւը, որուն ճշգրիտ թուականը կը մնայ մեզի համար անյայտ։

## 4.

*Պատմութեան բաժանումը:* — Սեբիոս թողուցած է մեզի պատմագիրք մը միայն, զոր անուանած է “Պատմութիւն Հերակլի„։

Գիրքը սկզբնագրին մէջ երեք գլխաւոր բաժանմունք ունեցած է. այն է՝

Նախերգանք՝ “Նախնեաց պատմութիւն„.

Ա. Գիրք կամ Դպրութիւն՝ “Պատմութիւն թագաւորական, վէպք յԱպրուէզն Խոսրով„ (էջ 35)։

Բ. Գիրք կամ Դպրութիւն՝ «Բաժանումն Սասանականին եւ մուտ որդւոցն Իսմայէլի յաշխարհս Հայոց» (էջ 104)։

Գրքերու այս բաժանումը ոչ միայն Նիւթն ինքն իրեն կ՚արդարացնէ, այլ եւ կ՚երաշխաւորէ Սիմ. Ապարանեցի (Վիպասանութիւն, էջ 113), որ Սեբէոս, էջ 104 կ՚ենթադրէ Բ. գրքի սկիզբը.

«Արդ ձեռն արկեալ ի յերկրորդ գիրն
առ ի պատմել զանցս աղէտին
զոր ի շփոթեալ ժամանակիս
գտեալ կայսերն Հրէից ազգին»։

Արդեամբք ալ Սեբէոս այս տեղ այնպիսի սկզբնաւորութիւն մ՚ունի, որ յայտնապէս Նոր բաժանմունքի մուտքն կ՚ակնարկէ. «Բաժանումն Սասանականին որ կալաւ զիշխանութիւնն ամս ՇԻԲ. եւ մուտ որդւոցն Իսմայէլի յաշխարհս Հայոց[1]։ Զաբրահամեանն ճառեցից զզաւակէ...»

Ակնարկութիւն չկայ, թէ Նախերգանքն եւ այս կրկին Դպրութիւնք կը ճանչնայի՞ն առանձին գլուխներու կամ հատածներու ստորաբաժանումներ։ Էջմիածնի Թ. 611, գտերով մեր Թ. 52էն, բաժնուած է այժմ Ա—Ծ հատածներու, որոնցմէ Ա—Է կը վերաբերին Նախերգանքին, Ը—ԼԹ՝ Ա Դպրութեան եւ Խ—Ծ՝ Բ Դպրութեան։

1 Ըստ մեր Թ. 52, Թղ. 47ա Ձեռագրին (Հատուած Խ)։ Տպագիրը փոփոխած է գլխիս խոստարանութիւնը Նոր յաւելուածներով։

Այս հատածներէն ոմանք ունին խոստաբանութիւն, այսպէս՝

Բ․ Ապստամբութիւն Պարթեւաց որ եղեւ ի յայս ժամանակի։

Ը․ Մատեան ժամանակեան, պատմութիւն թագաւորական եւն։

ԻԱ․ Սպանումն Մաւրկայ։

Խ․ Բարձումն Սասանականին եւն։

ԽԷ․ Վասն Հայոց կաթողիկոսին Ներսիսի։

ԽԸ․ Թուղթ արքային Իսմայէլի առ թագաւորն Յունաց Կոստանդին որ ունէր զայս ինչ։

Եթէ այս խոստաբանութիւնները հարազատ են սկզբնագրին, ինչո՞ւ նմաններ կը պակսին միւս հատածներու, եւ առ հասարակ այս Ա—Ծ հատածներու բաժանումը սկզբնագրի՞ն կը վերաբերին։

Նկատելով որ հատածները յաճախ անյարմար տեղեր կատարուած են, կը կասկածինք անոնց հնութեան մասին, բայց յամենայն դէպս անոնք մուտ գտած էին պատմութեան մէջ Յունան վարդապետի Նորոգութեան ժամանակ, Գրիգոր երիցու ընդօրինակութենէն յառաջ։ Նախնական բնագիրը ունեցած ըլլալու է գլուխներու բաժանմունք, մէն մի գլուխ առանձին խոստաբանութիւններով ճոխացած. ասոնց մնացորդներն են վերը յիշուածները։ Ապա անծանօթ գրիչ մը դուրս ձգած է Դպրութեանց եւ գլուխներու զանազանութիւնը եւ ամբողջն ենթարկած է միատեսակ բաժանման, հետեւելով յընդհանուրն սկզբնագրին գլխակար-

գութեան եւ այսպէս ստացուած են Ա—Ծ հատածները։

Առաջին հրատարակիչն Միհրդատեանց անտեսելով հատածներու այս բաժանումը, զոր կարելի էր դոյզն փոփոխութեամբ պահպանել, Սեբէոսի գործին բոլորովին նոր կերպարանք տուած է ըստ քմաց բաժնելով զայն Ա—Գ դպրութեանց, իսկ վերջինս Ա—ԼԸ գլուխներու, մէն մի գլուխ ուրոյն խոստաբանութեամբ ճոխացուցած։ Գլուխներու բաժանմունք առ հասարակ կը հետեւին հատածներու բաժանման (ի բաց առեալ Ա—Գ, Զ, ԺԹ, ԻԶ, ԼԲ—ԼԳ գլուխները)։

*Ամբողջութիւնը:* — Բաց ի այս այլակերպութենէն, զոր կրած է բնագիրը, Սեբէոսի պատմութիւնը խանգարուած է նաեւ իւր ամբողջութեան մէջ՝ թուղթերու ետեւառաջութեամբ եւ անկմամբ։

Վերագոյն ակնարկեցինք, թէ Բրոսէ պակասներ կը նշանակէր Ձեռագրին մէջ. այս պակասը զգալի կ'ընէ նաեւ Թ. 52, ուր կը բացակային Ե եւ Զ եւ Թ հատածները։ Առաջին երկու հատածները կը պատկանին ճիշդ այն մասին, ուր ըստ Բրոսէի Ձեռագրին մէջ թղթերու անկում տեղի ունեցած է. իսկ Թ հատածն դուրս ինկած է հաւանօրէն թղթերու ետեւառաջութեամբ։ Ետեւառաջութիւններ յաճախ տեղի ունեցած են, որոնց պիտի անդրադառնանք քիչ յետոյ։

Անկէ զատ Էջմիածնի Թ. 611ի նա-

խազաղափար օրինակն շատ հնացած եւ մաշած եւ երկաթագրով գրուած ըլլալուն՝ օրինակողը ստիպուած է անընթեռնլի տեղեր կամ դատարկ թողուլ եւ կամ բոլորովին անտեսել: Այնպէս որ Սեբէոսի մատենին ճշգրիտ իմացման համար անհրաժեշտ է ունենալ հնագոյն գրչագրի մը վրայ վերակազմուած նոր բնագիր մը: Իսկ այդ քանի կատարուած չէ, հարկ է նկատի ունենալ բանասիրութիւնը որ իւր դատաստանները Սեբէոսի մատենին մասին աւելի զգուշութեամբ պէտք է կտրել:

Իբրեւ հաստատութիւն մեր ըսածներուն համեմատութեան կրնան առնուիլ հայ պատմիչներու քով պահուած փոխառութիւնները Սեբէոսէն: Այսպես Ասողիկ, էջ 91—98, յառաջ բերած է բառական օրինակութեամբ Ներսէս Շինողի օրով Յունաց կայսեր ուղղուած թղթէն ընդարձակ հատած մը, ուսկից ակներեւ կը տեսնուի թէ որչափ փոփոխուած է Սեբէոսի բնագիրը՝ բառերու եւ նախադասութիւններու իսկ անկմամբ: Նոյնպէս Թովմա Արծրունւոյ քով կան ընդարձակ քաղուածներ Վահրամ Միհրեվանդակի թղթակցութիւններէն (Թովմ. Արծր. էջ 85—98): Պէտք է խոստովանիլ նաեւ թէ ոչ Ասողիկ եւ ոչ Թովմա հաւատարիմ չեն իրենց յառաջբերութիւններու մէջ, շատ տեղ փոփոխած են ըստ քմաց Սեբէոսի բնագիրը:

*Ետեւառաջութիւններ:* — Սեբէոսի Պատմութեան մէջ կան այժմ բազմաթիւ բնագրական սխալ ընթերցուածներ, որոնք սակայն

չեն հետաքրքրեր զիս այս րոպէիս։ Ես պիտի ջանամ այս տեղ մատնանշել թղթերու եւ տողերու տեղափոխութիւններ կամ ետեւառաջութիւններ, որոնք այնպէս կը խանգարեն բնագրի ընթացքը, եւ որոնց չեն անդրադարձած հրատարակիչներն եւ թարգմանիչները։ Առաջին անգամ Ս. Մալխասեան ուշադիր եղած էր թղթերու նման ետեւառաջութեանց, եւ առաջարկած էր ինչ ինչ ուղղութիւններ[1]։ Նոյն կարգի ինչ ինչ խանգարումներու անդրադարձած է նաեւ Յ. Մարկուարտ[2]։ Բայց Սեբէոսի մատեանը շատ աւելի խանգարուած է քան որ այս քննութիւնները մատնանշած են։ Ացելով անոնց իմ տեսութիւններս, կը ներկայացնեմ այս տեղ առաջարկութեան ձեւով ուղղութիւններու պատկեր մը։ Ինչպէս վերը ակնարկեցինք, միայն ընտիր ձեռագրի հիման վրայ կարելի է վերստուգել անոնց վերջնական ճշդութիւնը։ Պատմութեան ընթացքը առ այժմ այսպէս միայն ուղիղ կրնայ հասկցուիլ։

Էջ 1, 3 «զառասպելս». հոս ընդհատութիւն կայ նախադասութեան. շարունակութիւնը կը գտնուի էջ 1, 22–2, 3 ‘Նախ զնախնեացն... անհանճար զրուցացն (տպ. զաւրացն)։

Էջ 2, 8–15 «Եւ Բելն Տիտանեան — հալածեաց զնա» ինձի կը թուի թէ յաւելուած է օտար գրչէ։

---

1 Ստ. Մալխասեան՝ Սեբէոսի պատմութիւնը եւ Մ. Խորենացի։ Տփղիս 1899. էջ 101—109։

2 Թուղթ 19 Ապր. 1923։

Էջ 2, 14—3, 4 “Արդ այս է Հայկն — մարտիկ յոյժ„ պէտք է փոխադրել էջ 3, 18 “ոխութիւն մեծ„ նախադասութեան իբրեւ շարունակութիւն։

Էջ 2, 8—13 կրկնութիւն է յաջորդ էջին, եւ ոճով տարբեր անոր հոսանքէն։

Էջ 6, 25—7, 6 “Ի Դամասկոսէ ասեն գնացեալ զՄարսեակն — որ խառնին յազգ Արամանեկայ„ պէտք է փոխադրել էջ 6, 7 “յԱսորւոց թագաւորացն ծառայութենէ„ նախադասութենէն ետքը, այնպէս որ էջ 6, 23—24 “Քանզի զսոյն ճառէ ժամանակագիրն այդպէս որպէս առաջիդ կայ„ նախադասութեան յաջորդէ անմիջապէս 7, 7 “Ապստամբութիւնն Պարթեւաց„ խոստաբանութիւնը։

Էջ 9, 22 “Ի Միջագետս Ասորւոց„ տողին շարունակութիւնն է էջ 12, 1—13 “Զնոյն ձեւ աւրինադրէ (Արշակ փոքր) զՄամիկոնէիցն տան սպարապետութիւնն (այսպէս կը կարդամ տպագրին՝ սակս ազգաց զնեղութիւնն) — ի կոնակայ. յայսմ տանէ յառնէ սպարապետ„ (տպ. յայսմանէ այն է սպարապետ)։

Էջ 10, 6—12, 1 ուրիշ գրչէ յաւելուած կը թուի, կամ վասն զի ձեռագիրն հոս պակաս մ՚ունէր, եւ կամ վասն զի թագաւորաց ժամանակագրութիւնը չէր համաձայներ Մովսէս Խորենացւոյ ժամանակագրութեան հետ։

Էջ 10, 5 կը շարունակուի էջ 13, 12 “եւ եղեւ յետ մահուանն Արտաւանայ„...։

Էջ 13, 14 “Եւ պարթեւաց, ամս Ծ„ հատուածէն ետքը թղթեր ինկած են, որով Արքայացանկը (էջ 13—21) պակաս է սկիզբէն։ Արքայացանկիս վրայ պիտի խօսինք առանձին։

Էջ 30, 1 “Ապա եկն ինքն արքայն Անուշ Ըռուան Խոսրով„ կը շարունակուի էջ 34, 7 “որպէս ասացի[1], եւ արար պատերազմ մի մեծ ի Մելիտինէ„... մինչեւ էջին վերջը, ուր կ'աւարտի այս գլուխը։

Էջ 30, 2—34, 3 “որ զՎնդոյն կապեալ — ըստ դրաւշից իւրեանց„ շարունակութիւնն է 36, 6 (վարէն) “երկրորդին Վստամ„ Նախադասութեան։

Էջ 32, 1 “զորդի նորա զԽոսրով„ կը շարունակուի էջ 34, 4—7 “արդ վասն զի մայր Շապհոյ (իմա՛ Խոսրովու) դուստր Ասպարապետին այնորիկ — արիագոյն„։

Էջ 34, 3 “ըստ դրաւշիցն իւրեանց„ կը շարունակուի էջ 36, 6 (վարէն) “եւ զաւրս աշխարհին Հայոց„։

Էջ 34, 4—7 “արդ — արիագոյն„ պէտք է փոխադրել էջ 32, 2 (սկիզբը) որուն իբր շարունակութիւն պիտի յաջորդէ “խորհուրդ արարեալ„... (տե՛ս վերը)։

Էջ 34, 7 “որպէս ասացի„ — շարունակութիւնն է 30, 2 հատածին (տե՛ս վերը)։

---

1 Կ'ակնարկէ էջ 26—27 յիշուած արշաւանքը, ուր “գնաց ի տեղի մի„ պէտք է կարդալ “ի Մելիտինէ„ Համեմատ. այս Մալխասեան, անդ, էջ 111։

Էջ 34, 32 “ապա Հոյիմանն„ ասոր շարունակութիւնն է էջ 35 (նոր գլուխ)։

Էջ 36, 6 (վարէն) “եւ երկրորդին Վըստամ„· կը շարունակուի էջ 30, 2—32, 1 “որ (իմա՛ եւ Որմիզդ) զՎնդոյն կապեալ եդ — զորդի նորա զԽոսրով„ այնուհետեւ կու գայ 34, 4—7 “արդ վասն զի մայր Շապհոյ (իմա՛ Խոսրովու) դուստր Ասպարապետին անօրէն (հմմտ. էջ 36, 5) որ էր նախարար — արիագոյն„ ապա կը յաջորդէ՝ 32, 2 “խորհուրդ արարեալ„։

Էջ 36, 6 (վարէն) “Եւ զզաւրս աշխարհին„ շարունակութիւնն է 34, 3ին “ըստ դրաւշից իւրեանց„։

Էջ 68, 3 (վարէն) “ապա ապստամբեալ„ — այս տեղ սկիզբէն թուղթ ինկած կ'երեւայ, ուր ընդարձակ կը պատմուէր “զդիմելն Հերակղի ի կողմանս հիւսիսոյ առ արքայն Թէտալացւոց, զյուղարկումն անհուն բազմութեանն ազգաց, զասպատակն Յունաց յԱտրպատական, զաւռ եւ զաւար„ (հմմտ. էջ 23)։ Այս արշաւանքի յիշատակութիւնը, զոր կը խոստանար Սեբէոս տալ մանրապատում, չկայ այժմ մեր օրինակին մէջ, թերեւս այս գլխի մնացորդն ըլլայ էջ 68, 3—69, 4 հատուածը (հմմտ. J. Marquart, ի թերթին Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes 1898, էջ 191), զոր Մարկուարտ (թուղթ 19 Ապր. 1923) այժմ կը միտի փոխադրել էջ 60, 8, ԺԴ գլխոյն վերջը։ Մարկուարտ, նոյն տեղ, կ'առաջարկէ նաեւ էջ 64, 5

(վարէն)—**68**, 4 վարէն "Եւ եղեւ յանցանելն — ի Գոգովիտ գաւառի„ փոխադրել էջ **88**, 11, "Շինումն տաճարին Հռիփսիմեայ„ հատուածէն յառաջ:

Թղթերու մեծ ետեւառաջութիւն կրած է մասնաւորապէս Ներսէս Շինողի 645ին Կոստանդին կայսեր գրած նամակը, որ զետեղուած է էջ 130—134: Կ'առաջարկեմ կարդալ այսպէս.

Էջ **120**, 29—**123**, 24 "ապա դարձեալ Խոսրով — ի գանձս արքունի„. Պարսից ժողովն ամբողջ այս պատմութիւնը միջանկեալ հատուածի մը նկարագիրն ունի, անյարմար տեղւոյն, եւ ինծի կ'երեւայ թէ նախնաբար առանձին գլուխ մը կը կազմէր եւ զետեղուած էր էջ 88 Մովսէսի թղթին պատասխանէն ետքը եւ Հռիփսիմեանց տաճարին նորոգութենէն յառաջ, թէեւ Ասողիկ (էջ 93) 1004ին արդէն այսպէս տեսած եւ կարդացած է: Ուստի էջ **120**, 29 "Նա գիտէ„ հատուածն իր շարունակութիւնը կը գտնէ էջ **124**, 25 "իսկ արդ„: Յաջորդ էջերը պէտք է վերակազմել այսպէս[1].

Էջ **127**, 20 "եւ նա զնոյն հաստատեաց զաւանդութիւն„, կը շարունակուի էջ **127**, 33 — **128**, 11 "եւ դարձեալ երկրորդ անգամ յորժամ — զոր հիմնադրեաց մեզ Ս. Հոգին„:

---

1 Կ'երեւայ թէ ձեռագրին այս մասը իւրաքանչիւր էջին վրայ 12—13 տող ունէր, հատուածներու չափն է առ հասարակ 13, 26, 36, 48, 60 տող, որոնք միշտ 13էն կ'ածանցին:

Ասոր շարունակութիւնն է էջ 127, 20—32 “երկրորդ անգամ դարձեալ ի Նիկիայն ժողովեցան — զոր հաստատեցին հարքն քո„։

128, 32—129, 5 “արդ զի Թշնամիք — զճշմարտութիւնն հաւատոցն որ ի Նիկիայն աւետարանեցաւ լոյս„։ 130, 8—131, 2 “յամի ժդ երեքտասաներորդի (sic) կենարարին — որ ի Նիկիայն աւետարանեցաւ մեզ„։ 129, 5—130, 7 “յորս փութով հասանէր Ռստակէս — զհիմնադրութիւն հաւատոցն„։ 128, 11—31 “զայլ ժողովսն ուրեք ուրեք լեալս — որոց պատմութիւնք յայտնի են„։ 131, 3—131, 10 “արդ ի Ներոնէ — վարդապետաց եկեղեցւոյ„։ 133, 5—134, 20 “մեք ընկալաք — նզովեալ լիցի„։ 131, 10—133, 4 “յաւուրս Մարկիանոսի — ոյք գործէք զանօրէնութիւն„։ 134, 20—134, 33 “եւ մեզ տէրունականն„ ցվերջ հատուածին։

էջ 135, 12 “Թագաւորութիւն կողմանց հիւսիսոյ„. ասոր շարունակութիւնն է էջ 112, 25—113, 18 հատուածը՝ “բայց զահագին աղէտս — եւ որ ի կարգին է„։

էջ 140, 4 “իշխանաց եւ վաճառականաց„ հատածն իւր շարունակութիւնն ունի էջ 146, 30—147, 10 “զի եւ զշինականսն ապրեցուցանեն — ի սուր սուսերի„. կը շարունակուի դարձեալ էջ 140, 5—146, 15 “իսկ արքայ Կոստանդին — ի Դուին„։

էջ 146, 16 “եւ նստաւ ի Դուին„ կը շարունակուի էջ 149, 13—150, 2 “եւ էին

աւուրք ցրտաշունչ — զգաստերս բազմաց„: Կը յաջորդէ էջ **146**, 16—25 "եւ խորհէր երթալ հարկանել զվիրս — ոչ գործեցին„: Ապա՝ էջ **150**, 14—**151**, 2 "եւ Թէոդորոս Ռշտունեաց տէրն — Վաղարշապատ քաղաքի„: Կը շարունակուի էջ **146**, 26—30 "իսկ իշխանքն Հայոց — զաւուրս ձմերանոյն„: **147**, 11—**149**, 12 "յայսմ ամի — մահուամբ„: Էջ **151**—2 "քաղաքին„ կը շարունակուի էջ **151**, 28—**153**, 19 "ի նմին ամի — ընդ ամենեսին„:

Էջ **151**, 3—28 "արդ թէպէտ — ի ժամանակի իւրում„ հատուածը կը կազմէ Սեբէոսի պատմութեան վերջաբանը, որ յայտնապէս սխալ զետեղուած է, պէտք է փոխադրել **153**, 19 էջին վերջը:

Թերեւս յանդուգն նկատուի Սեբէոսի պատմութեան վերակազմութեան այս փորձը. Թերեւս ինչ ինչ կէտեր ուրիշ աւելի լաւագոյն դասաւորութեան կարօտին, բայց այն ստոյգ կը մնայ, որ Սեբէոսի պատմութեան այժմեան բնագիրը խանգարուած է իւր այլեւայլ մասերու մէջ, թէ՛ կրճատմամբ բնագրին, թէ՛ ներմուծումներով եւ թէ թղթերու սխալ դասաւորութեամբ:

5.

*Բովանդակութիւնը:* — Սեբէոս իւր պատմութիւնը բաժնելով երեք մասերու՝ պատկերացուցած է հոն Հայոց հին, նոր եւ նորա-

գոյն շրջանի պատմութիւնը, յատկապէս ծանրանալով “ժամանակեան„ շրջանի վրայ, որուն սկիզբն է 590 տարին եւ կը տեւէ կը բաւէ մինչեւ 661:

Նախերգանքը կը խոստանայ “զանստոյգն նկարագրել ժամանակ„ եւ “զնախնի քաջացն ձեռնարկելով դրոշմել վիպասանութիւնս, զսուտն յիշատակել զառասպելս„ գծելով “նախ զնախնեացն պատմութիւնս ուստի եղեւ սկիզբն ամենայն երկրի շինուածոց լըմանց„ (էջ 1—2):

Ներկայ բնագիրը հաւանօրէն սկիզբը պակաս մ'ունի, ուր կը պատմուէր համառօտիւ “սկիզբն ամենայն երկրի շինուածոց լըմանց„՝ յիշատակութեամբ ստեղծագործութեան, համաշխարհային ջրհեղեղին, նոյեան տապանին եւ լեզուաց խառնակութեան: Այժմ պատմական տեսարանը կը բացուի Բելի եւ Հայկի պատերազմներով. եւ յաջորդաբար կը ներկայացուի Հայկի սերնդաբանութիւնը՝ մէն մի նահապետի կեանքէն կարեւոր դէպքերու համառօտ յիշատակութեամբ, մինչեւ Աղեքսանդր Մակեդոնացի: Պարթեւաց պետութեան հիմնարկութեամբ նա՛եւ Հայաստան ազատութիւն կը գտնէ Պարթեւ գերիշխանութեան տակ: Այստեղ յատկապէս կ'ակնկալուէր պատմութեան ամէնէն հետաքրքրական մասը՝ այն է Ագաթանգեղեայ արձանագրութեան պատճէնը՝ Պարթեւ եւ Հայ թագաւորաց մասին, որ ինչպէս կ'երեւայ՝ ինկած է այժմ եւ կամ բնագիրն

ենթարկուած է հոս փոփոխութեան (այս կէտին յաջորդիւ պիտի անդրադառնանք ճոխագոյնս)։ Պատմութեան թելը կարճառօտ գծերու մէջ կը հասնի մինչեւ Պարթեւ պետութեան վերջը. որմէ յետոյ կը տիրանան Իրանի Սասանեանք։ Յաջորդ շրջանը կը բաւականանայ պատմագիրը ներկայացնել ժամանակագրական արքայացանկով մը, ուր իբրեւ հայելւոյ մէջ կը պատկերացուին երեք դրացի պետութեանց՝ Հայոց, Պարսից եւ Հռովմայեցւոց թագաւորները՝ կարեւոր դիպաց հարեւանցիկ յիշատակութեամբ։ 428ին Հայաստան կը կորսնցնէ իր անկախութիւնը եւ կ՚ենթարկուի Սասանեանց գերիշխանութեան։ Եռանուն արքայացանկը այսուհետեւ կը դառնայ երկանուն եւ կ՚աւարտի 652 թուին քով, երբ Սասանեան հարստութիւնը յանձին վերջին Յազկերտի թագազուրկ կ՚ըլլայ եւ երկիրը կը բռնակալէ արաբական իշխանութիւնը։ Թէեւ Էջմիածնի Թ. 611 ձեռագիրը այս տեղ դատարկ մը կ՚ենթադրէ, բայց այժմ դժուարին է մեզի գուշակել անոր բովանդակութիւնը։

Բուն պատմական բաժնին սկիզբ պէտք է նկատել նախերգանքի երկրորդ մասը, զոր կրնանք անուանել Ա. դպրութեան մուտքը։ Հեղինակը աչք մը նետելով Արշակունի տան անկումէն մինչեւ Վարդանանց պատերազմի վերջը, այս ինքն մինչեւ այն շրջանը, ուր կը նահատակուին Ս. Ղեւոնդեանք, արդէն ծանօթ իրողութիւն կը նկատէ այս դէպքերը, “այն ամենայն ի ձեռն այլոց գրեցաւ, որպէս ցուցանէ նոյն իսկ

պատմութիւնն„ (էջ 23), ակնարկելով Եղիշէի Պատմութիւնը: Իր ձեռնարկած Պատմութեան ծրագիրն գծեցիկ կերպով կու տայ ինքնին հետեւեալ տողերու մէջ (էջ 23—24).

"Բայց զայն ամենայն՝ որ 1. ի Պերոզի ժամանակն եղեալ չարութիւն (= Վահանի պատերազմները), 2. եւ զառ ի Խոսրովայ (531—579) զապստամբութիւն զՎարդանայ, եւ 3. զզօրացն Պարսիցն զապստամբելն յՈրմզդդիէ (579—590), 4. զմահն Որմզդայի եւ զթագաւորելն Խոսրովայ (590—628). 5. զմահն Մաւրկայ (582—602) եւ զթագաւորելն Փոկասայ (602—610). 6. զառնուլն Եգիպտոսի. 7. զկոտորածն Աղեքսանդրի. 8. զդիմելն Հերակլի (610—641) ի կողմանս Հիւսիսոյ առ արքայն Թէտալացւոց. 9. զյուղարկումն անհուն բազմութեանն ազգաց. 10. զասպատակն Յունաց յԱտրպատական, զառ եւ զաւար. եւ զդարձն ընդ Փայտակարան. 11. զեկ զօրացն Պարսից յարեւելից, զդիմի հարկանել նմա. 12. զպատերազմն որ յաշխարհին Աղուանից. 13. զդարձ կայսերն ի Նախճըւան քաղաքն եւ զկռիւն Արճիշոյ. 14. զգնալն կայսեր անդէն ի սահմանս իւր. 15. զմիւս եւս այլ դիմելն ի վերայ Խոսրովայ. 16. զգործ պատերազմին՝ որ ի Նինուէ. 17. զասպատակն որ ի Տիզբոն քաղաք. 18. զդարձն յԱտրպատական. 19. զմահն Խոսրովայ. 20. զթագաւորելն Կաւատայ (627—629). 21. զհաշտութիւն որ ի մէջ թագաւորացն երկոցունց. 22. զթողուլն անդրէն ի բաց զսահ-

մանսն Յունաց. 23. զդարձ աստուածեան խա-
չին ի քաղաքն սուրբ։ 24. Յետ այսորիկ ըզար-
թուցեալ անհուն բարկութիւն եւ 25. զվերջին
աղէտս հինին՝ որ ի կողմանս հարաւոյ. եւ թէ
26. ո՞րպէս յանկարծօրէն շարժեցան բանակքն
իսմայէլի, եւ ի վայրկեան ժամանակի վանելով
զզաւրութիւն թագաւորացն երկոցունց՝ կալան
յԵգիպտոսէ մինչեւ յայս կոյս գետոյն մեծի
Եփրատայ եւ ցսահման Հայաստանեայց. եւ յե-
զերէ ծովուն մեծի արեւմտից մինչեւ ի դուռն
թագաւորութեանն Պարսից. զամենայն քաղաքս
Միջագետաց Ասորւոց եւ զՏիսբոն եւ զՎեհ
Արտաշիր եւ զՄարանդ, զՀամատան մինչեւ
ցԳանձակ քաղաք եւ ցՀրատն մեծ՝ որ յԱտրպա-
տական գաւառի։ Զայս ամենայն կամեցայ
ի ձեռն գրոյս այսորիկ կարճառօտ ձեզ վի-
պասանել։»

Այս ծրագրի համաձայն շատ համառօտ գծերով նախ կ՚ընծայէ Հայաստանի քաղաքական վիճակը պարսկական տիրապետութեան տակ Վահան Մամիկոնեանի ապստամբութենէն մինչեւ Խոսրով Ապրուէզի գահ բարձրանալը (590)։ Վահանի եւ անոր եղբօր՝ Վարդ պատրիկի սակաւամեայ կիսանկախ տիրապետութեան վերջը՝ եկան "մարզպանք պարսիկք"։ Անոնց հարստահարութիւնք պատճառ տուին 571ի Դունոյ ապստամբութեան, որուն յաջորդեցին երկարամեայ պատերազմունք Բիւզանդոնի եւ Տիզբոնի մէջ, հայկական հողի վրայ մինչեւ 590, երբ Խոսրով Ապրուէզի եւ Մօրկայ մէջ հաշտու-

թիւն կնքուելով ժամանակ մը խաղաղեցաւ երկիրը։ Այս մասը, որ բաւական մանրապատում ներկայացուած է, ամէնէն հետաքրքրական հատածն է Սեբէոսի պատմութեան՝ ըլլալով միակ աղբիւրը Զ. դարու Հայ եւ Արեւելքի պատմութեան համար։ Ընդարձակօրէն պատկերացուած է հոն նաեւ Վահրամ Միհրեւանդակի ապստամբութիւնը։

Այս տեղ կ'աւարտի Մուտքը եւ պատմագիրն կը բանայ “Ժամանակեան մատեանին„ էջերը՝ նկարագրելու մանրապատում Խոսրով Ապրուէզի գահ բարձրանալու, Մօրկան սպանման եւ այս առթիւ Յունաց եւ Պարսից մէջ վերսկսած երկարամեայ պատերազմներու դէպքերը։ Այս շրջանին դուրս կը կարկառի Հերակղ կայսեր դէմքը, իբրեւ պատմական դարուն հոյակապ հերոսը, թէեւ պատմութիւնը կը շարունակուի դեռ՝ Հերակղի մահուընէն ետքը իբր 20 տարի ընդգրկելով իր ծոցը։

Պատմական թատերաբեմին վրայ գլխաւոր գործող անձնաւորութիւններ կը հանդիսանան Խոսրով Ապրուէզ, Մօրիկ, Հերակղ եւ Կոստանդին կայսերք, որոնք մերթ անձամբ կռուի ասպարէզ իջած՝ բախտին կը հրամայեն, եւ մերթ իրենց զօրավարներու ձեռքով արեւելքի ճակատագիրը կ'որոշեն։ Պատերազմի դաշտին մէջ սակայն երկու կողմերն ալ յոգնած ուժասպառ՝ աւարն թող կու տան երրորդ թշնամւոյն, որ առոյգ ուժերով կռուի ասպարէզի վրայ կ'երեւայ յանկարծօրէն։ Արաբական արշաւանքնե-

րուն զոհ կ'երթան ամբողջ Պարսկաստանն եւ ընդարձակ մասեր Բիւզանդական հողերէն։

Բայց նաեւ Հայ նախարարներու մասնակցութիւնը այս կռիւներուն նկատի առնուած է ընդարձակ գծերով՝ թէեւ գրեթէ միշտ Յունաց եւ Պարսից յարաբերութեան մէջ, ինչ որ բնական էր՝ քանի որ զօրաշարժն գլխաւորապէս այս երկրին մէջ տեղի կ'ունենար. մասամբ նոյնիսկ այս երկրի համար։

Այս տեղ "կը տեսնենք Հայաստանի ներքին դէպքերը, այնպիսի անտէրունջ ու տագնապական ժամանակին մէջ Հայկազուն քաջաց շահատակութիւնները, մէկ մէկու ետեւէ արիւնալից պատերազմներն ու անոնց դառն հետեւանքները, միանգամայն ազգին ու երկրին օգտակար եղող շատ բարի խորհուրդներուն չյաջողիլը՝ գլխաւորաբար ամէն մէկ կողմնակցութեան միայն իր շահը փնտռելուն եւ մէկալներուն հետ չմիաբանելուն համար։ Հայք կամ Հայոց մէկ մասը Բիւզանդեան կայսերաց հետ կապակցութիւն ունեցած ատեն՝ գունդագունդ զօրքով անոնց մեծամեծ ծառայութիւններ կ'ընեն Հայաստանի մէջ, Պարսից դէմ, Ափրիկէի կողմերն ու մանաւորապէս Թրակիայի մէջ Բուլգարաց եւ ուրիշ վայրենի ազգաց դէմ, որոնք նոյն ատենները Բիւզանդեան կայսրութեան մեծ նեղութիւն կը հասցնէին։ Մաւրիկ կայսր հայ ազգը բոլորովին տկարացնելու համար՝ միայն իրեն շահաւոր գաղափար մը կը շինէ. կ'ուզէ կամաց կամաց Հայերը բովանդակ Թրակիա փո-

խաւրել, որ հոն վայրենի ազգերու հետ կռուելով՝ սպառին, ինչպէս որ ըստ մասին ալ եղաւ, ուր Մամիկոնեան Քաջ Մուշեղն ալ շատ հայազգի նախարարներով իր գերեզմանը գտաւ։ Մաւրիկ նոյն խորհուրդը կու տայ նաեւ Պարսից Խոսրով Թագաւորին, որպէս զի ան ալ իր բաժնին հայերն արեւելեան կողմերը խաւրէ, բայց հոս իրերն ուրիշ կերպ դարձան։ Քանի մը միջանկեալ պատահարներէն ետեւ՝ Սմբատ Բագրատունի՝ հայ գնդերով Ապրուէզ Խոսրովի գահուն ամէնէն ամուր նեցուկը կ'ըլլայ. արեւելեան կողմերը պատերազմ պատերազմի վրայ կը մղէ. բոլոր Պարսից պետութեան մէջ արդիւնաւոր եւ անուանի կը հռչակուի ու մինչեւ Թագաւորին երրորդ ըլլալու պատիւն կ'ընդունի։ Այս երեւելի գործողութիւնները նաեւ դիւցազնական Սմբատին հայրենեաց օգտին կը դառնան. Հայաստան պատիւ ու հանգիստ կը գտնէ[1]։

Թէպէտ Սեբէոսի պատմութեան գլխաւոր տեղը Սմբատ կը բռնէ. բայց կը պարունակէ նաեւ պատմութիւնը հարիւրաւոր ծանրակշիռ դէպքերու, զորոնք ունեցան Հայք նոյն ատենները Պարսից այլ եւ այլ Թագաւորներու հետ, սկըսեալ Խոսրով Ապրուէզէն մինչեւ Յազկերտ վերջին։ Բաց ի Սմբատէն ընդարձակ էջեր կը գրաւեն նաեւ Վարազտիրոց Ասպետ, Թէոդորոս Ռշտունի, Համազասպ Մամիկոնեան եւ ուրիշներ, որոնք ժամանակակից պատմութեան մէջ,

---

1 Եւրոպա 1852, Թ. 21։

յատկապէս հայկական բեմին վրայ՝ խաղացին նշանակալից դերեր, մինչեւ 662։

Որչափ մանր կը նկարէ Սեբէոս քաղաքական անցքերու պատկերը, այնչափ թռուցիկ կ'անցնի եկեղեցական դէպքերու վրայէն, յաճախ լռութեան իսկ տալով։ Է. դարու հայ կաթողիկոսաց անուանք լռուած են բոլորովին. հարեւանցիօրէն միայն կը յիշուին Մովսէս Եղիվարդեցի, Յովհ. Բագաւանեցի եւ Աբրահամ եւ Կոմիտաս կաթողիկոսները, որոնց ժամանակն այնքան հարուստ է Հայոց եկեղեցական պատմութեան ծանրակշիռ դէպքերով. այսպէս Յովհ. Գաբեղենեցւոյ մահն օտարութեան մէջ, Մովսէս Եղիվարդեցւոյ, Յովհ. Բագաւանեցւոյ ընտրութեանց պարագաները, փոփոխակի յարաբերութիւնք, Վրթանէս Քերդողի տեղապահութիւնը, Աբրահամ կաթողիկոսի ընտրութեան պարագաները. այս միջոցին կ'իյնայ Վրաց բաժանումն Կիւրիոն կաթողիկոսի օրով. Հայոց եկեղեցւոյ աղերսն դրացի եկեղեցիներու հետ, կէտեր, որոնց մասին, ինչպէս գիտենք այլուստ, հրատապ խնդիրներ յուզուած են ժամանակին։ Մինչդեռ Սեբէոս խոր լռութիւն պահած է այս մասին, ուրիշ տեղեր յատկացուցած է երկար էջեր Կոմիտաս, Եզր եւ Ներսէս կաթողիկոսներու, աւելորդ մանրամասնութիւններով, բայց զանցառութեամբ կարեւոր դէպքերու։ Զոր օրինակ ամբողջութեամբ յառաջ բերած է Երուսաղէմի Մոդեստոս երիցու եւ Կոմիտաս կաթողիկոսի թղթակցութիւնները. նոյնպէս Հայոց առ Կոստանդին կայսր ուղղած

շատ ընդարձակ թուղթը, բայց անյիշատակ թողուցած է Դունոյ 645ի ժողովն, որուն ինքն ալ մասնակցած էր։ Անըմբռնելի է մեզի յայսմ Բագրատունեաց եպիսկոպոսի բռնած ուղին։

## 6.

*Պատմութիւն ի Հերակղ* — կամ պատմութիւն Հերակղի անուանակոչութիւնը, զոր ընտրած է Սեբիոս իւր աշխատութեան իբրեւ խորագիր, պատմութեան այս բովանդակութեամբ իւր արդար մեկնութիւնը չի գտներ։ Մինչդեռ Հերակղի գործունէութիւնն պատմութեան մէկ փոքր մասն միայն կը գրաւէ, խորագիրն միայն կամ գլխաւորաբար Հերակղի վարուց եւ գործոց պատմութիւնն ակնկալել կու տայ։ Հ. Յ. Գաթըրճեան, որ անդրադարձած է ինքնաբերաբար խորագրի այս անյարմարութեան, հետեւեալ լուծումը կ'առաջարկէ (Եւրոպա 1852, թ. 21)․

“Մեզի կ'երեւայ որ այս տարակոյսը հետեւեալ կերպով կրնայ իր մեկնութիւնը գտնել։ Երբ Մօրիկ կայսր սպանուելով Փոկաս անոր գահը յափշտակեց՝ Պարսից Ապրուէզ Խոսրով թագաւորն իր տղայութեան ատեն Մօրիկ կայսրէ շատ օգնութիւն գտած ըլլալով՝ իբր անոր մահուան վրէժը հանելու համար՝ Յունաց տէրութեան երկիրներուն վրայ յարձակեցաւ, քրիստոնէից շատ վնասներ ըրաւ, մինչեւ Կ.Պո-

լիս հասաւ, Նոր Երուսաղէմ քաղաքին տիրեց ու Ս. Խաչն առաւ տարաւ։ Այս դէպքերուն վրայ քրիստոնեայք մեծապէս տրտմած էին ու յուսահատածի պէս կը կենային։ Մէյ մ՚ալ Հերակլիոս կայսր Աստուծոյ դիմելով՝ Պարսից դէմ ելաւ, ու զանազան յաղթութիւններով բոլոր կրակապաշտ մոգակրօնները մերժեց եւ Ս. Խաչն ալ ետ առաւ։ Նոյն յաջողութիւններով քրիստոնեայք հոգի առին ու քաջալերեցան, եւ այս անյուսալի դէպքերն Աստուծոյ մասնաւոր հրաշքը սեպեցին, ուստի եւ շատերուն ձեռքն ալ ինքնայորդոր շարժեցաւ՝ աս ամէն բան ի գիր աւանդելու։ Սեբէոսն ալ կ՚երեւայ թէ բուն աս դէպքէս շարժեալ ըլլայ՝ գրելու իր պատմութիւնը եւ պատմութիւն ի Հերակլ անուանելու. բայց միանգամ սկսելէն ետեւ, ինչպէս բնականապէս կը պատահի, յառաջ ու վերջն ալ շատ յարակից բաներ շարեր է։ Ասոր վրայ աւելի եւս կը հաստատուինք, երբոր միտ դնելու ըլլանք որ արդէն նոյն իսկ Սեբէոս իր պատմութեան ընթացքին մէջ Հերակլին ու անոր վերոյիշեալ գործքերուն մասնաւոր ուշադրութիւն մը կը ցուցնէ։„

Հ. Գաթըրճեանի տեսութիւնը շատ հաւանական կ՚երեւայ այնու որ այս շրջանին իրօք դարուն մարդն կը համարուէր Հերակլ եւ հրապարակի վրայ — նաեւ հայկական մասին մէջ — գոյութիւն ունէին “Հերակլայ պատմութիւնք„, զատ Սեբէոսի աշխատութենէն։ Ն. Մառ հրատարակեց այսպիսի հատուած մը՝ հանելով

էջմիածնի թ. 340 Հրաշափառ տօնականէն, որ խորագիր կը կրէ. “Ցաղագս սրբոյ Խաչին ի Հերակլայ պատմութեանց[1]„: Բիւզանդական մատենագրութենէն հմմտ. Գ. Պիսիդեայ գործերը:

Եթէ հայ պատմագիրներու միաբան վկայութիւնը չնախապաշարէր զմեզ — որոնք Սեբիոսի երկասիրութեան խորագիրն “Պատմութիւն ի Հերակլ„ կը ճանչնան — աւելի հարազատ խորագիր պիտի համարէի “Պատմութիւն յԱպրուէզն Խոսրով„, ինչպէս բացայայտ կը յորջորջէ իւր երկասիրութիւնը ինքնին հեղինակը՝ “Մատեան ժամանակեան, պատմութիւն թագաւորական, վէպ արիական, վանումն տիեզերական, հէն Սասանական, յԱպրուէզն Խոսրովեան, որ հրդեհեալ բոցացոյց զառ ի ներքոյս ամենայն„ ... “եւ արդ ասացից զՎէպս ի կործանիչն եւ յապականողն Խոսրով յԱստուծոյ անիծեալն„ (էջ 35): Եւ իրօք ալ Սեբիոսի պատմութեան ծիրն կը բոլորի Խոսրով Ապրուէզի շուրջը, որուն ինչպէս գահակալութեան, նոյնպէս պատերազմներու եւ մահուան մանրապատում պատմիչն կը հանդիսանայ (էջ 35—103): Կրնայ դիւրաւ մտածուիլ, որ անագանագոյն ժամանակի հայ պատմիչներէն բարեփոխուած ըլլայ խորագիրը՝ փոխանակ աշխարհաւէր օտարադէն թագաւորի

[1] Тексты и разысканія по армено-грузинской филологіи. Книга VII, 2 (С.-Петербургъ 1909), էջ 52:

անուան՝ բարեպաշտօն Հերակղ կայսեր անունը կարկառուն ընծայել ուզելով։

*Արժէքը։* — Ղ. Փարպեցւոյ պատմական աշխատութենէն ետքը հայ պատմագրութիւնը ընդհատութիւն կրած էր մինչեւ Սեբէոս, 175 տարուան միջոց մը (484—660) գրեթէ։ Նախորդ շրջանի պատմագիրներն ալ բաւականացած էին տալ մօտաւոր անցեալի եւ ժամանակակից պատմութիւնը. հայկական հնախօսութիւնը՝ ազգին ծագման եւ նախաւոր շրջանի վէպը, այնպէս ինչպէս պահպանուած է ցեղին զրոյցներուն մէջ, տակաւին չէր փորձուած գրի առնել։ Սեբէոս ձեռնարկելով դրոշմել "համառօտիւք զարդեաց ժամանակացս զաղետիցս վերաբերութիւն զամս եւ զաւուրս հինգ թագաւորացն[1] յիշատակելով", փորձած է համառօտիւ նկարագրել նաեւ "զանստոյգ ժամանակն եւ զնախնի քաջացն վիպասանութիւնս" կցելով անոր "զառ ի յապայսն եղեալ" դէպքերն ալ. այսպէս առաջին, միջին եւ վերջին շրջանները իրարու զօդելով ընծայած է ամբողջական պատկեր մը, որ "Հայոց պատմութեան" առաջին փորձն է։ Իբրեւ այսպիսի չենք կրնար անշուշտ պահանջել — յատկապէս հնագոյն Հայոց պատմութենէն — ամէն կատարելութիւն, եւ ոչ այն ինչ որ ապա յաջողցուցած է Մ. Խորենացի։ Սեբէոս միջամուխ եղած է պատմագրելու առանց մեծ յաւակնութեան՝ "ոչ ի

---

1 Իմա՛ հաւանօրէն 590—652 շրջանի թագաւորներն Մօրիկ, Խոսրով Ապրուէզ, Հերակղ, Կոստանդին, Յազկերտ։

կամայական պիտոյից վարժ խուզակի„՝ անստոյգ ժամանակներու միայն փարատել, որուն համար չէ զգացած իւր մէջ ոչ կարողութիւն եւ ոչ ի ձեռին կարեւոր աղբիւրներ, այլ իբրեւ սիրող, հետաքրքրուող, հետազօտող, ջանացած է գոնէ աղօտ լուսով մերձենալ “անստոյգ ժամանակներու„: Հետաքննողի այս բերումը կը տեսնուի իր վրայ, երբ ի Տիզբոն ձենաց դեսպաններու բերնէն ստուգել կ'ուզէ հայկական աւանդութիւնը Մամիկոնեանց ծագման մասին. կամ Խոսրովու դաստակերտին մէջ Մծուրքէն բերուած յունարէն արձանագրութեամբը կը հետաքրքրուի (տես վերը, § 3): Եթէ նա իւր խուզարկութիւնք կատարած է առանց ըլլալու վարժ խուզակ մը, բայց մենք չենք կրնար իր մէջ “անվարժ խուզակ„ մըն ալ տեսնել: Սեբէոս ինչպէս իւր “ժամանակեան պատմութիւնն„ գրած է հետեւելով դէպքերուն, հարցաքննելով ականատեսներն եւ ականջալուր վկաները, նոյնպէս հաւանօրէն “Նախնի քաջաց„ վէպն ալ ջանացած է ի վեր հանել որոնելով եւ հետազօտելով ժողովրդական աւանդութիւններն, որչափ ալ անոնք “սուտ առասպելաց„ նկարագիրն ունենային: Այս բազմամեայ շրջանին համար իր ձեռքն պակաս չեն եղած անշուշտ նաեւ գրաւոր աղբիւրներ, ինչպէս է օր. համար Ագաթանգեղեայ յունարէն արձանագրութիւնը: Թէպէտ ըստ մեծի մասին անծանօթ կը մնան մեզի իր գործածած աղբիւրները (տես վարը) — որոնց թուին մէջ եղած են նաեւ դիւանական վաւերա-

գիրներ — բայց այն ստոյգ է, որ իր շօշափած նիւթերու նկատմամբ ինքն է միակ ականակիտ աղբիւրը, յատկապէս Զ. եւ Է. դարերու համար։

Եթէ Սեբէոս ՚ոչ ի կամայական պիտոյից վարժ խուզակի„, այսինքն պատմագրելու արուեստին ոչ քաջ հմտութեամբ ձեռնարկած է իր պատմութիւնը, բայց նա բոլորովին անտեղեակ ալ եղած չէ արուեստին։ Նա կազմած է իրեն որոշ ծրագիր մը, յօրինուածութիւն մը, որուն համաձայն բարձրացուցած է շէնքը։ Նիւթը հաւաքելէ եւ բաժնելէ ետքը՝ պատմելու ձեւ ընտրած է տարեգրական եղանակը, ուր տարիներն զիրար յառաջ կը մղեն, քաղաքական դէպքերն կը յաջորդեն իրարու ամ ըստ ամէ, բայց ոչ առանց ներքին կապակցութեան դէպքերու։ Առաջնորդուած պատմագրութեան կրկին ջահերու լուսով՝ ճիշդ աշխարհագրութեամբ ու հարկաւոր ժամանակագրութեամբ[1] իւր տարեգրութիւնը ընծայած է մեկին եւ լուսաւոր. ժամանակագրութեան հիմ ընտրուած են Պարսից, Յունաց (Հռովմայեցւոց) եւ Հայոց ինքնակալներու (եւ նախարարներու) գահակալութեան տարիները. դէպքերու ժամանակը կը ճշդուին նաեւ ամսով եւ օրով։ Ի հարկէ այս ճշդութիւնը չի կրնար փնտռուիլ ամէնուրեք եւ ոչ ալ այն յագեցուցիչ ժամանակագրութիւնը, զոր գործածեցին հռովմէական տարեգիրներու մատենագիրները[2]։

---

1 Մասիս 1852, Թ. 13.

2 Անդ։

Պատմական դէպքերու անգիտակից եւ հարեւանցիկ նկարագրութեամբ չի բաւականանար պատմիչը. այլ կը նկրտի միշտ թափանցել վարագոյրէն ներս, երեւան բերելու այն ծածուկ շարժառիթները, ձգտումները, որոնք պատճառ եղած են քաղաքական անցքերու։ Սեբէոսի պատմութեան շատ մեծ եւ իրեն սեփական առաւելութիւնն է եւ այն որ անիկա դեսպանական պատմութիւն մըն է, այս ինքն առանց Հայաստանի ներքին դէպքերուն մոռացիր ըլլալու՝ Հայաստանի մերձաւոր դրացի պետութեանց հետ ունեցած յարաբերութիւնները ճշդիւ ու անընդհատ կը հաղորդէ. նկարագիր մը, որ անշուշտ Սեբէոսի պատմագրական ընդունելութեան մեծ պատիւ կ՚ընէ[1]։ Իր տեսութեանց եւ դատաստաններուն մէջ փորձառու է պատմագիրն եւ հեռատես, լուրջ եւ անկողմնակալ նկատմամբ քաղաքական անցքերուն. գիտէ ուղիղ դատել՝ ի հարկին պարսաւելով ազգայինն ալ, օտարինն ալ, հեռու ազգայնամոլ կամ օտարատեաց ձգտումներէ։ Բայց ուրիշ կերպ են իր դատաստանները երբ խնդիրը երկու դրացի՝ հայ եւ յոյն եկեղեցիներու յարաբերութեանց մասին է։

Իրեն աւելի մօտ եղած են Պարսկաստան եւ Հայաստան. ուր տեղի ունեցած քաղաքական անցուդարձերուն աւելի մանրամասնօրէն ծանօթ է. մինչդեռ Բիւզանդիոն եւ առ հասարակ

1 Անդ։

յայնկոյս ծովու կատարուած դէպքերն հազիւ թէ հետաքրքրած են զինքը։ Գլխաւորաբար չորս նկատմամբ մեծագին յիշատակներ կը մատակարարէ Սեբէոսի պատմութիւնը մեզի, այսինքն է. Ա. ազգային դէպքեր. Բ. Հայոց՝ Պարսից տէրութեան հետ ունեցած յարաբերութիւնն ու նոյն տէրութեան ներքին պատահարները. Գ. Հայոց՝ Բիւզանդեան կամ Յունաց կայսրութեան հետ ունեցած կապակցութիւններն ու նոյն տէրութեան մանաւանդ արեւելեան կողմերը գործածները. եւ Դ. Մահմետականաց սկզբան, զօրանալուն եւ Հայաստան մըտնելուն լուրերը[1]։

Պատմութեան այս բովանդակութիւնը որչափ ալ հոծ է Զ. եւ Է. դարերու պատմական դիպուածներով, որոնց համար ինքը միակ աղբիւր է, սակայն եւ այնպէս չենք կրնար հաստատել, թէ Սեբէոս կը գծէ իւր ընդգրկած շրջանին ամբողջական պատկերը։ Մինչդեռ նա տեղիս տեղիս միջամուխ կ՚ըլլայ մանրամասն դէպքերու նկարագրութիւնը տալ, որոնց թուին մէջ կան եւ զրոյցներ, միւս կողմանէ զանց կ՚առնու կարգ մը կարեւոր իրողութեանց յիշատակութիւնը, որոնք այն շրջանին տեղի ունեցան թէ քաղաքական եւ թէ եկեղեցական ասպարէզներու վրայ։ Կան հոս եւ հոն մութ, դըժուարիմաց եւ չփոթ կտորներ. կարգ մը դէպքեր, որոնք քաղաքական կեանքի մէջ ունեցած

---

1 Եւրոպա, 1852, Թ. 21։

են ծանր հետեւանքներ, նկատուած են հարեւանցիօրէն՝ կամ սկզբնապատճառն եւ կամ վախճանն լռելով։ Որչափ ալ ասոնք բաղձալի կէտեր են, եւ պիտի առաւելուին Սեբիոսի աշխատութեան արժէքը, սակայն առանց անոնց ալ այն ունի իր արժանիքը, ըլլալով արեւելեան պատմութեան համար անսպառ աղբիւր, ուսկից կը բղխեն պատմական անցեալի մասին մանրակրկիտ նկարագրութիւններ, որոնք այլուստ կամ անծանօթ են եւ կամ անստոյգ։ Ինքը կ'ուղղէ, կը հաստատէ եւ կը լրացնէ յոյն եւ ասորի հեղինակներու վկայութիւնները։ Զարմանալի է իր համաձայնութիւնը այն ասորերէն ժամանակագրութեան հետ, զոր հրատարակեց Guidi[1]։

*Գրութեան ժամանակը:* — 661 թուին, երբ Մաւիաս (Մուաւիէ) ամիրապետն նուաճից իւր միահեծան իշխանութեան տակ Արաբիան, Պարսկաստանն եւ Եգիպտոսը, կ'աւարտէ Սեբիոս իւր պատմութիւնը։ Դժբախտաբար գրութեան վերջը կը պակսի այժմ յիշատակարան կամ վերջաբանական մաս, ուր թերեւս ակնարկութիւն մ'ըրած ըլլար թէ որ թուին ձգած է ձեռքէն փետուրը։ Այն պարագան որ էջ 23—24 միահաղոյն կու տայ պատմութեան ուրուագիծը, այսինքն թէ որ թուէն

[1] Th. Nöldeke, Die von Guidi herausgegebene syrische Chronik, übersetzt und kommentiert. Wien 1893 (Sitzungsberichte der k. Akademie der Wiss., philos.-hist. Klasse 128).

պիտի սկսի պատմել եւ ուր աւարտել, ենթադրել կու տայ թէ աշխատութիւնս տարեգրութեան ձեւով գրուած չէ՝ տարուէ տարի, այլ մէկ անգամէն, որոշ ժամանակի ընթացքին: Թէ այս ժամանակը 661էն յառաջ թէ ետքը կ'իյնայ, դժուարին է վճիռ կայացնել: Տեղ մը, էջ 34, թուելով պարսիկ սահմանակալներն, որոնք պաշտօնավարեցին Հայաստանի մէջ, անոնց անուանացանկն կը հասցնէ մինչեւ “ցայսօր ժամանակի„, այն է “մինչեւ լցան ամք երեքտասանք հաշտութեան„ (էջ 70), այսինքն՝ 603 տարին: Այս տեղ սակայն Սեբէոս ակնարկել կ'ուզէ աւելի իր ժամանակակցութիւնը վերջին սահմանակալին, քան թէ իր գրութեան ժամանակը. թէեւ կրնայ մտածուիլ նաեւ թէ պատմագիրն էջ 23—24 տուած բովանդակութիւնը վերջին խմբագրութեան ատեն աւելցուցած ըլլայ: Սեբէոսի նախնական ծրագրին համաձայն պատմութիւնը պիտի ընդգրկէր Խոսրով Ապրուէզի թագաւորութեան (հմմտ. էջ 35) եւ անոր յաջորդող իբր քսանամեայ շրջանը, այսինքն թէ ինչպէս սասանեան պետութիւնը յետ վերջին ճգնաժամային ապրումներու սկսաւ դիմել իր կործանման եւ տեսաւ օրհասը (652): Այս թուականը երկիցս կը շեշտուի Սեբէոսի պատմութեան մէջ (հմմտ. էջ 21 եւ 137): Կը կարծեմ թէ Սեբէոս միանգամ Արաբացւոց արշաւանքներն յիշատակելէ ետքը՝ կարեւոր տեսած է շարունակել անոնց պատմութիւնը մինչեւ Մաւիաս. ուստի նա գրած ըլլալու է իր

պատմութիւնը յընթացս 652—661 տարիներու։

Լեզուն: — Քննելով Սեբիոսի մատեանը նաեւ լեզուի տեսակէտով, պիտի բաւականանամ հոս յառաջ բերել Հայերէնի հոյակապ ուսուցչի մը՝ Հ. Յ. Գաթըրճեանի գնահատութիւնը, որ հետեւեալ տողերու մէջ կ'ամփոփուի.

“Սեբիոս՝ որ մեր գրաբար լեզուին Արամեան գաւառներուն մէջ դեռ կենդանութիւն չնչած ատեն իր պատմութիւնը շարադրած է, բնականապէս պէտք էր որ իր պատմական ծանօթութիւններուն հետ մէկտեղ նաեւ բանասիրական ու լեզուագիտական նկատմամբ կարգ մը նոր նիւթեր մատակարարէր[1]։

1. Լեզուն հոն դեռ իր կենդանական հիւթը բոլորովին կորսնցուցած չէ. սկզբնական (originel) կերպարանք մը կայ, դասական առաւելութիւն մը կ'երեւայ Յովհ. Մամիկոնեանի գրութենէն անհամեմատ վեր, նոյն իսկ Փարպեցիէն աւելի ողորկ։ — 2. Այսու հանդերձ բուն յատուկ սկզբնականութիւն (originalité) կը պակսի, շատ տեղ հետեւողութեան նշմարանքն յայտնի կը տեսնուի՝ երբեմն Ագաթանգեղոսէն, երբեմն Փ. Բիւզանդէն կամ Եղիշէէն ու երբեմն Ս. Գրոց թարգմանութենէն խօսքի հատուածներ իր գրութեանը մէջ հիւսելով, թէպէտ շատ ճարտարութեամբ եւ յատուկ կերպով ու նշա-

---

1 Հմմտ. Եւրոպա, 1852, Թ. 31։

նակութեամբը, որով անհամեմատ կը տարբերի Յովհ. Կաթուղիկոսէն։ 3. Ինք Սեբէոս յատուկ զեխութեան ատեցող՝ հատու բայց լեցուն ոճ մ'ունի, այնպէս որ քանի մը տեղ իր ժամանակին նայելով այնպիսի առաւելութիւնը ժամանակադարձ (anachronisme) մը կը կազմէ։ 4. Բայց հայերէն բանասիրութիւնը այնչափ Սեբէոսի քերականական համաձայնութենէն սորվելու բան չունի, որչափ բառերէն[1]։

Իսկ եթէ իր բանասիրական ոճին կամ կարգաբանութեան վրայ ընդհանուր դիտողութիւն մ'ընելու ըլլանք, իր ժամանակի լեզուին ճիշդ պատկերը կը տեսնենք։ Եթէ մէկ կողմանէ չենք գտներ հոս յառաջուան զարդարուն, անկախ, սկզբնական եւ Արարատայ ամենածին դաշտին պէս ծաղկաւէտ ոճը, որ Ե. դարու գրքերու մէջ այնպէս զեղուն եւ յորդաբուխ առատութիւն մ'ունի եւ բանասէրի մը աչուըներուն խիտ առ խիտ զննելու նիւթեր կը մատուցանէ, մէկալ կողմանէ ալ պէտք է խոստովանիլ թէ իրմէ վերջիններէն ոմանց չորեքպատիկ թերութիւններէն ալ ազատ է. որ է կամ բռնազբօսիկ ու չափազանց սեթեւեթ ոճ մը, կամ Սխալ ու անյարմար գործածութիւններ կամ խորթ, օտար եւ հելլենաբան շարադրութիւն մը, եւ կամ Բոլորովին մերկ, ցամաք եւ հետեւակ բանակարգութիւն։

Սեբէոսի պարզութիւն սիրող ու անպա-

[1] Մասիս 1852, Թ. 31։

ճոյն գրիչը դիտելով՝ կրնանք ըսել, թէ երբեք չէ աշխատած իր գիրքն արտաքոյ կարգի ու շինծու զարդերով պճնելու, այլ հետեւած է իր ժամանակի գրաւոր լեզուի բնական կարգին, եւ ինչ ոճ, բառ, ըսուածք կամ դարձուած որ գործածուած է, բնականապէս բերած է խօսքին ընթացքը[1]»։

*Թարգմանութիւններ*: — Սեբիոսի մատեանը «առանձին ու առաջին տպագրութեամբ հայերէնախօս ուսումնասիրաց հաղորդուած չհաղորդուած՝ նոյնը գաղղիական թարգմանութեամբ Բոսպորոսի ծովեզերէն եւրոպական բանասիրութեան ընծայ կ'երթայ» (Մասիս, 1852. Թ. 13)։ Այս թարգմանութիւնը, որուն թարգմանիչը անծանօթ կը մնայ, հրապարակ չելաւ սակայն[2]։

Առաջին անգամ եւրոպական աշխարհի առջեւ դրուեցաւ Սեբիոսի Պատմութիւնը Ք. Պատկանեանի ռուսերէն թարգմանութեամբ. Исторія императора Иракла, сочиненіе епископа Себеоса, писателя VII вѣка. Переводъ съ Армянскаго (съ объяснительными примѣчаніеми К. П. Патканова). С.-Петербургъ 1862, 8°, էջք XVI + 216։

Գերմաներէն թարգմանութիւն մը կը յիշէ

---

1 Եւրոպա, 1852, Թ. 31։

2 Այս ըլլալու է նաեւ ի թերթին Journal asiatique de Constantinople, t. I (Constantinople 1852), էջ 75 ծանուցուած թարգմանութիւնը (Հմմտ. Macler, Pseudo-Sebêos, p. 6)։

Թ. Նէօլդեկէ, զոր կատարած է Dr. Wenzel, որուն ձեռագրէն օգտուած է ինքը իւր Persische Studienի համար ի Wiener Sitzungsberichte d. k. Akademie der Wiss. phil.-hist. Klasse, Bd. 116 (1888), էջ 394, ծն. 4. բայց հրատարակ ելած չէ մինչեւ օրս: Քաղուածաբար թարգմանութիւն մը տուած է H. Hübschmann, Zur Geschichte Armeniens. Die ersten Kriege der Araber. Aus dem Armenischen des Sebeos. Leipzig (1875), 8°, էջք 44:

Գաղղիերէն թարգմանութեամբ լոյս տեսաւ 1867ին միայն պատմութեան առաջին մասը (էջ 1—10) յանուն Սուտ-Ագաթանգեղոսի. Le Pseudo-Agathange, histoire ancienne de l'Arménie. Extrait de l'Histoire de Héraclius par Sebeos. Traduction de l'arménien ի գիրս V. Langlois, Collection des historiens anciens et modernes de l'Arménie. I (Paris 1867), pp. 195—200: Անկէ արտատպուած՝ C. Müller, Fragmenta historicorum Graecorum, V, 2, p. 195—200:

Մանր քաղուածներ հմմտ. E. Dulaurier, Recherches sur la chronologie arménienne. Paris 1859 (Լ.—ԼԲ. եւ ԼԵ. գլուխներու թարգմանութիւնը): Բրոսէի քաղուածները յիշեցինք:

Սեբէոսի պատմութեան գաղղիերէն ամբողջական թարգմանութիւնը հոգայ Frédéric Macler, որ զանազանելով Ա. եւ Բ. մասեր, տուաւ նախ Սեբէոսի պատմական մասը՝ Histoire

de Héraclius par l'évêque Sebêos, traduite de l'arménien et annotée par Fr. Macler. Paris 1904, 8°, pp. XV + 166 (Թարգմանութեան մասին հմմտ. F. N. Finckի մատենախօսականը Göttingische gelehrte Anzeigen, 1907, SS. 207—210)։ Իսկ Ա. մասին երկրորդ դպրութիւնը (էջ 11—21) առանձին՝ Pseudo-Sebêos, texte arménien traduit et annoté par Fr. Macler. Paris 1905, 8°, p. 39 (նախ Journal Asiatique, 1905, pp. 121—155)։

*Քննութիւններ եւ օգնական աղբիւրներ:* — Կ'ամփոփեմ այստեղ Սեբէոսի անձին, գրութեան եւ պատմութեան հայող գրուածները։ Մաս մը յիշատակուեցաւ արդէն վերագոյն. ուրիշներ պիտի յիշատակուին յընթացս քննութեանս։ 1. (Հ. Յ. Գաթըրճեան)՝ Սեբէոս եպիսկոպոս պատմագիր. Եւրոպա շաբաթաթերթ (Վիեննա), 1852, թ. 21, 26, 31 (էջ 82—83, 102—103 եւ 123)։

2. Հ. Յ. Գ(աթըրճեան)՝ Նորագիւտ Հայերէն մատեան մը. Մասիս օրաթերթ (Կ. Պոլիս) 1852, թ. 13։

3. Թ. Մ. Միհրդատեան՝ Սեբէոսի Նորագիւտ մատենին վրայ մինչեւ ցայժմ երեւցած դատաքննութիւններուն վրայօք քանի մը խօսք. Մասիս 1852, թ. 64։ Ինքը կ'երեւայ եւ այն “Բանասէր ոմն„, որ գրած է “ի վերայ պատմութեանն Սեբէոսի„ Նոյեան Աղաւնի (Կ. Պոլիս), 1852, թ. 15 (Յաւելուած)։ Եր-

կուքն ալ անիմաստ ընդդիմախօսութիւններ Գաթըրճեանի յօդուածներուն դէմ։

4. Ք. Պատկանեանի յառաջաբանը ռուսերէն թարգմանութեան սկիզբը (տե՛ս վերը)։

5. Հ. Գ. Զարբհանալեան՝ Պատմութիւն հայկական հին դպրութեան. Բ. տպ. (Վենետիկ 1897) էջ 435—441։

6. Հ. Ղ. Ալիշան՝ Հայապատում, Վենետիկ 1901, հտր. Ա. 1, էջ 164—166։

7. Հ. Յ. Աճառեան՝ Նորագիւտ բառեր Սեբէոսի մէջ. Արարատ, 1911, էջ 230—231։

8. Ernest Gerland, Die persischen Feldzüge des Kaisers Herakleios (Dissertation), Leipzig 1894, էջք 46 (Արտատպուած Byzantinische Zeitschriftէն)։

9. Angelo Pernice, L'imperatore Eraclio. Loggio di storia bizantina. Firenze 1905, 8°, էջք XXVIII—327 (Հմմտ. առ այս Byz. Zeitschrift, 1906, էջ 301– 307։

10. Ե. Վ. Տէր-Մինասեան՝ Այսպէս կոչուած Պարսից ժողովը. Արարատ 1907, էջ 179—195։

## 7.

*Աղբիւրներ:* — Սեբէոս կարդացած է իր օրով հրապարակի վրայ շրջած մատենագրութիւնը, թէեւ յականէ յանուանէ ակնարկութիւն չ'ըներ իր աղբիւրներու մասին։ Զօրեղ

ազդեցութիւն գործած են իր վրայ յատկապէս Ս. Գիրքն եւ Փաւստոս Բիւզանդ։

1. Ս. Գիրքը իբրեւ հասարակաց աղբիւր, եկեղեցական կրթութեանց գլխաւոր հրահանգանոց, Սեբէոսի մտաւոր զարգացման, նաեւ ոճին վրայ ազդած է լայն գծերով։ Յաճախ կոչումներ կ'ընէ Ս. Գրքէն, կը թեւակոխէ անոնց մեկնութեան եւ կարգ մը դէպքերու եւ երեւոյթներու բացատրութիւնը կը ջանայ հիմնել մարգարէութեանց վրայ։ Մասնաւորապէս Ս. Գրքի պատմական մատեանները (Ծննդոց, Թագաւորութեանց, Մակաբայեցւոց եւն) խոր տպաւորութիւն ձգած են իր պատմելու ոճին վրայ։ Ձգտած է տեղ տեղ նաեւ նմանութեանց[1]։

2. Բայց իր ոճին վրայ ամէնէն աւելի ազդեցութիւն թողուցած է Փ. Բիւզանդ։ Հայ պատմական գրականութեան այս անդրանիկ մատեանը կ'երեւայ թէ Սեբէոս կրած է իր բարձին տակ. յաճախ կարդացած է զայն եւ այսպէս կամայ թէ ակամայ ենթարկուած է անոր ոճին, ի բերան ուսած է անկէ ասութիւններ, բառեր. եւ Բիւզանդարանի պատմական, յորդառատ ոճի հոսանքէն տարուած է գիտակցաբար կամ ան-

1 Հմմտ. եւ Խալաթեանց՝ Մարաբա Մծուրնացի, էջ 40–63, ուր գլխաւորաբար Նախերգանքը քննութեան առնուած է։ Յամենայնի համամիտ չեմ Խալաթեանցի համեմատութեանց։ Ս. Գիրքէն առնուած ասութիւններ, բառեր աւելի մեծաքանակ թուով կարելի է ցոյց տալ բուն Պատմութեան մէջ։

գիտակցաբար։ Փաւստոսի ազդեցութիւնը կը նկատուի իր վրայ ոչ միայն Նախերգանքին մէջ, այլ եւ ամբողջ պատմութեան ընթացքին։ Գրիգոր Խալաթեանց (անդ, էջ 77—82) մատնանիշ ըրած է Նախերգանքէն տեղիքներ, որոնք կախում ունին՝ երբեմն բառական իսկ՝ Փ. Բիւզանդէն։ Այս ազդեցութիւնը Նախերգանքին վրայ աւելի մանրամասնօրէն ուսումնասիրած է Հ. Ա. Մատիկեան (Կեղծ-Սեբէոս, էջ 39—59), որ բաց ի բառական քաղուածքներէ, նաեւ լեզուական "զուգակցութիւններ", ոճի մեծ նմանութիւններ վեր հանած է. ասկէ տարուած է մինչեւ անգամ այն կարծիքի, թէ Նախերգանքի "ինչ ինչ հատուածները, որոնք գրքին (իմա՛ Նախերգանքին) հազիւ կէսը կը գրաւեն, հատակոտորներ են Ե. դարու մէջ գրուած Հայոց նախնական պատմութեան մը, որուն հեղինակն է ինքնին իսկ Փաւստոս" (անդ, էջ 9)։ Ես չափազանց կը գտնեմ այս հետեւութիւնը[1]։ Մատիկեան, որ այնքան խնամով լեզուական խնամութիւն, "զուգակցութիւն" փընտռած է Նախերգանքի եւ Փաւստոսի մէջ, անփոյթ գտնուած է Փաւստոսի հետ համեմատութեան առնուլ նաեւ Սեբէոսի պատմութիւնը, ուր աւելի հարուստ թուով պիտի գտնէր նոյնանման լեզուական "զուգակցութիւններ", բառեր, ասութիւններ, նախադասութիւններ իսկ.

---

[1] Նախերգանքը Բիւզանդի վերագրած են ուրիշ տեսակէտներով նաեւ Ն. Ադոնց, Ց. Թոփճեան եւ Հ. Ղ. Ալիշան. Հմմտ. անդ, էջ 5-8։

ուսկից ի հարկէ կարելի չէ հետեւցնել, թէ նաեւ Սեբիոսի պատմութիւնը հատակոտոր մըն է "Ե. դարու մէջ գրուած" Հայոց պատմութեան մը: Այս "զուգակցութիւնները" արդիւնք են պարզապէս Փաւստոսի պատմութեան յաճախ ընթերցման, տպաւորութիւններ են գործուած՝ անգիտակցաբար՝ Սեբիոսի վրայ: Եթէ Նախերգանքի մէջ ցոյց տրուած "Փաւստոսեան հատակոտորները" (= Ա դպրութիւն) ունին բառական համեմատութիւններ Փաւստոսի Գ.—Զ. դպրութեանց հետ, ինչո՞ւ Փաւստոսի Գ.—Զ. դպրութիւնները չունին իրարու հետ նման համեմատութիւններ: Համեմատութեան առնուած ինչ ինչ տեղեր իրենց բառական նմանութեամբ բանագողութեան կասկած կը յարուցանեն. անոնք ոճի՞ բնական հոսանքէն յառաջացած չեն: Ճոխաբանն Փաւստոս, Ե. դարուն եթէ ձեռնարկէր յօրինել Հայոց նախնական պատմութիւն մը, պիտի գտնէր բաւական առատ նիւթ իր նպատակին համար "յերգս առասպելաց վիպասանութեան" (Բուզ., Գ. ժգ), որոնք իր օրով տակաւին կենդանի էին հայ ժողովրդեան բերանը, այնպէս որ պէտք պիտի չզգար Առալէզի կամ Մամիկոնեանց եւ կամ Բագրատունեաց մասին խօսք ըրած ատեն մի եւ նոյն պատկերները (motif) դիմելու՝ նոյն բառերով, մի եւ նոյն նախադասութիւններով, զորոնք գործածած էր "Ա դպրութեան" մէջ: Ինչո՞ւ կրկնութիւն բառերու, նախադասութեանց, երբ յորդաբան հե-

ղինակը կարող էր մտքեր արտայայտելու համար նորանոր բացատրութիւններ ստեղծել։ Հեղինակի մը քով կարելի է ընդունիլ մի եւ նոյն բառի յաճախակի կիրառութիւն, համանման ասութիւններու յաճախակի գործածութիւն, բայց ոչ մի եւ նոյն գաղափարներու արտայայտութեան համար համաթիւ, համանուն բառագանձ, բառացի կրկնութիւն, ուրիշ ասութեամբ՝ բանագողութիւն նախորդ էջերէն։ Սեբէոսի մատեանը միաձոյլ արտադրութիւն է մի եւ նոյն գրչին. Նախերգանքի եւ Պատմութեան մէջ կ'իշխեն մի եւ նոյն մտքերը, մի եւ նոյն ոճը. Մալխասեանց համեմատութիւններով աւելորդ անգամ ապացուցուցած է նոյնը։ Եւ արդէն բանասէրներու կողմանէ անտեղի կասկած էր Նախերգանքի հեղինակի մասին (այս նկատմամբ տե՛ս վարը)։ Այսու չեմ ուզեր սակայն ժխտել, թէ Սեբէոս չէ ունեցած Նախերգանքի համար իր առջեւ նաեւ գրաւոր աղբիւր, թէ նախնական եւ թէ արշակունի շրջանի, յատկապէս եռանուն եւ երկանուն արքայացանկին համար (տե՛ս վարը)։ Հ. Մատիկեան յիշեալ եզրակացութեան յանգած է յատկապէս յափշտակուելով Նախերգանքի “ինչ ինչ հատակոտորներու„ դասական լեզուի շունչէն, նմանութենէն։ Եւ Հ. Մատիկեան չէ սխալած իր ճաշակին մէջ, բայց յանգած է սխալ եզրակացութեան։ Դասական գրականութեամբ սնած ճաշակ մը դասական շրջանէն այնչափ հեռու ժամանակ մը գրուած հեղինակի մը

*գրչին տակ — ինչպէս է Սեբէոս — պիտի դժուարի անշուշտ հաւատալ, թէ երբեւան կարենան գալ դասական տողեր։ Բայց պէտք չէ հիասթափուիլ երեւոյթիս առջեւ։ Ինչպէս Հ. Գաթըրճեան ճշգրիտ նկատած է՝ Սեբէոսի քով "լեզուն դեռ իր կենդանական հիւթը բոլորովին կորսնցուցած չէ. սկզբնական կերպարանք մը կայ. դասական առաւելութիւն մը կ'երեւայ... այսու հանդերձ բուն յատուկ սկզբնականութիւն կը պակսի, շատ տեղ հետեւողութեան նշմարանք յայտնի կը տեսնուի՝ երբեմն Ագաթանգեղոսէն, երբեմն Փ. Բիւզանդէն կամ Եղիշէէն ու երբեմն Ս. Գրոց թարգմանութենէն խօսքի հատուածներ իր գրութեան մէջ հիւսելով, թէպէտ շատ ճարտարութեամբ եւ յատուկ կերպով ու նշանակութեամբ*[1]"։ *Այնպէս որ — ինչպէս իրաւամբ կը շեշտէ Հ. Գաթըրճեան, "քանի մը տեղ իր ժամանակին նայելով (լեզուի) այնպիսի առաւելութիւնը ժամանակադարձ* (anachronisme) *մը կը կազմէ"։ Անշուշտ Հ. Գաթըրճեան այս ծանրակշիռ դատաստանը միայն նախերգանքի այն "ինչ ինչ հատակտորներու" համար չէ արտայայտած. նաեւ Պատմութեան մէջ կան ցրիւ համանման հատուածներ, ոչ նուազագոյն չափով։ Որովհետեւ այն հատածներու մէջ չկան դասական լեզուին հետ անհաշտ բառեր կամ ասութիւններ, ասկէ կարելի չէ նոյնհետայն հետեւցնել, թէ անոնք*

1 *Մասիս* 1852, *Թ.* 13, *հմմտ. վերը, էջ* 55–56։

դասական շրջանէ են։ Դասականի հոգին, կենդանութիւնը, թուիչքը կը պակսի անոնց մէջ. այս պատճառաւ ալ չե՛ն դասական, նմա՛ն են բայց ո՛չ նոյն։ Ա՛յս է նաեւ Հ. Յ. Տաշեանի վճիռը. “Անանուն (= Նախերգանքը) ներկայ դրից մէջ կամ ներկայ խմբագրութեամբ Բուզանդայ հետ որեւէ կապ չի կրնար ունենալ՝ ո՛չ պարունակութեամբ եւ ո՛չ մանաւանդ ոճովն ու լեզուով[1]„։

Աւելի պայծառ ցուցնելու համար Սեբէոսի կախումը Բիւզանդարանէն, նաեւ պատմութեան ընթացքին, համեմատութեան կը դնեմ հետեւեալ տեղերները, զորոնք հաւաքած եմ ափ յափոյ, առանց մանր խուզարկութեան։

Սեբէոս:

Բայց ինձ այս կարի է զի ապրեցաւ տիրատեացն այն (Վահրամ) եւ գնաց։ Այր գող է նա եւ վերստին այլ զաւրս գումարէ ի քաջաց ազգաց արեւելից։

Պատասխանի ետուն նմա եւ ասեն. Զտիրատեացն զայն նոքա զերծուցին, քանզի մերով աչօք իսկ տեսաք, զի կալաւ զնա Մուշեղն այն Մամիկոնեան, եւ ետ նմա երիվար եւ զէն, եւ արձակեաց։ Զայս ասացին,

Փաւստոս:

Վարազդատ... մանուկ բանսերթուկ է, զչար ի բարոյ որոշել չգիտէ... Բատ... սկսաւ քսու մատուցանել (զՄուշեղայ). ...ոչ այն Մուշեղ է, որ... ի պատերազմունս Պարսից քանիցս անգամ ձեռնհաս եղեւ սպանանել զՇապուհ... եւ ոչ եսպան. այլ արձակեաց զԹշնամին... Այլ արժան է մեռանել ի ձեռաց քոց։... Այսպիսի բանիւք գաղտնի

1 Արշակունի դրամներ, Բ. էջ 228։

*Սեբէոս:*

զի կամեցան ի վերայ նորա չարիս: ...Եւ ոչինչ էած զմտաւ արքայն՝ եթէ զինչ իցէ բանն այն. քանզի մա-նուկ տղայ էր եւ խակ: ...այլ հաստատեաց զմիտս իւր ի վերայ բանիցն ստու-թեան. եւ ասէ. Կոչեսցէ այսր Մուշեղ. եւ կապեսցի ոտիւք եւ ձեռօք, մինչեւ ես վասն նորա ծանուցից կայսեր: Ի նմին ժամու... արձակու զմի ի սուրհան-դակացն առ Մուշեղ. փու-թով եկ՝ ասէ, գործ հա-սեալ է կարի կարեւորա-գոյն: Եւ հրաման ետ փուշ-տիպանացն իւրոց եւ ասէ. Պատրաստ լերուք, զի յոր-ժամ եկեսցէ նա, եւ ես ձեռամբ նշանակեցից ձեզ, յանկարծակի զձեռս նորա յետս կալարուք եւ կապե-ցէք զնա, բայց պատրաստ լիջիք, զի այր քաջ է նա, եւ մի՝ կամ թէ ինքն մե-ռանի, կամ զիս սպանանէ: Էջ 41:

*Փաւստոս:*

հանապազ զթագաւորն գրգռէին, մինչեւ հաւանե-ցաւ... սպանանել: Ապա խորհուրդ արարին, թէ որ-պէս ըմբռնել կարասցեն զնա... թէ զգայ, ասեն, մեծ պատերազմ առնէ... Եւ հրաման ետ Վարազ-դատ... ընթրիս մեծ գոր-ծել... եւ կոչել հրա-մայեաց յընթրիս... եւ զզօրավարն Մուշեղ... Պատրաստեաց Վ. արս ըն-տիրս հզօրս, զօրեղս, զի կալ կալցէն գործոյն, հար-կանել յանկարծօրէն... ի վերայ Մուշեղի... վասն զի այր քաջ էր, Առեղք ի ջանեն եւ յարուցանեն զնա: Ե. լե—լզ:

Եկն ընդ արքային Պար-սից՝ կոչեցեալ Անուշ Ըռ-ռուան Խոսրով, հանդերձ բազմութեամբ սպառազէն զօ-րացն եւ ազատօք բազմօք... եւ ի վաղուեան առաւօ-

Խաղաց գնաց ընդ Ներ-սեհ արքայ... եւ առեալ զամենայն զօրս իւր... ծղա-կոյտն բազմութեամբ հան-դերձ, անթիւ վաճառօք եւ ընիւն մոլեգնութեամբ,

| Սեբէոս։ | Փաւստոս։ |
| --- | --- |
| տուն... բաղխէին զմի-մեանս պատերազմաւ։ ... խորտակեցան (Պարսիկք) եւ փախեան... Բայց Թա-գաւորն մազապուր պրծեալ սակաւուք... փախստական ընդ Աղձնիան անդրէն ի կայանս իւր երթայր։ Եւ նոքա առին զբանակն ամենայն հանդերձ արքունական գանձիւքն։ Եւ կալան զբամբիշն եւ զբանաւան (°), եւ Թափեցին զմաշկապերճանն, ամենայն զեսպակն...։ Էջ 26—27։ | եւ ամենայն կանանօքն, եւ հանդերձ տիկնանց տիկնաւն, եկն եհաս ի սահմանս Հայոց... Ապա հասեալ ի տուրջէն ժամուն, անկանէին (զօրքն Հայոց եւ Յունաց) ի վերայ Թագաւորին Պարսից... եւ առին զկապուտ զաւար բանակին, եւ զկանայս Թագաւորին եւ զբամբիշն, եզբանաւան (°) ընդ նոսին, ...զգանձս ...նոցա։ Բայց միայն Թագաւորն պրծեալ մազապուր... պրծեալ ելանէր փախստական, հազիւ ուրեմն կարէր անկանել հասանել յաշխարհն իւր։ Էջ 55—56։ |
| Ապաւէն եւ Թիկունս իւրեանց արարին զամուրս աշխարհին Մարաց՝ զանտառս խորաձորս։ Էջ 147։ | փախեան ելին ի քա-քաղաքէ անտի յառապարն ... եւ զանապատն եւ զքարուտ տեղիսն ապաւէն իւրեանց համարեցան։ Էջ 17։ |
| Եւ սկսեալ զմնացեալ զմարդիկն զօրս ժողովել եւ գունդս գունդս կազմել։ Էջ 148։ | Ապա ժողովեաց նա զամենայն քաջս քաջս նախարարացն, գունդս կազմէր բազում յոյժ։ Էջ 17։ |
| Հրաման ելանէր ... խընդրել յաշխարհէն Հայոց զայր եւ ձի արս ընտիրս սպառազէնս ԲՌ հեծելոց. էջ 53, 51։ | Եւ որ հասին ... ի ձեռս նորա ԺՌ հեծելու, ընտիր ընտիր եւ քաջ այր եւ ձի. էջ 140—141 (Նորայր՝ Կորիւն, էջ 180)։ |

| Սեբէոս: | Փաւստոս: |
| --- | --- |
| թէ որպէս միամտութեամբ եւ տիրասիրութեամբ գործեցեր. 75: | զարմացեալ եմ... ընդ ընդ մտերմութիւն միամտութեան... ընդ տիրասիրութեանն. 202. |
| փոխանակ վաստակոցն. 42: | փոխանակ ամենայն ազգին մերոյ վաստակոցն. 280: |
| դառնայր յաղթութեամբ մեծաւ եւ բազում աւարաւ. 67: | Եւ ինքն (դառնայր) մեծաւ անուամբ եւ բազում աւարաւ. 254: |
| անհնարին լինէր կոտորածն. 75. | լինէր անհնարին կոտորածն. 26: |
| ապստամբ ելեալ ընդ արեւմուտս... ապստամբ ելեալ արշաւեալ ի սահմանս Յունաց... գաւառի. 66: | ասպատակ սփռէր ընդ ամենայն երկիրն սահմանացն Հայոց. 145, 148, 172 (Նորայր՝ Կորիւն, էջ 184—185): |
| Թափեցաւ ընդ լեռնակողմն ի դաշտն, 93. Երթեալ թափեցաւ ի Գողթն գաւառն. 94. Թափեցից... ի քեզ... զկապարճս իմ, էջ 4. Թափեցին ի նոսա զկապարճս իւրեանց. 75: | Եկն թափեցաւ յաշխարհ նորա. 21: |
| Նորա ոչ կարացին զդէմ ունել նոցա պատերազմաւ, 150. «որում ոչ ոք կարէր զդէմ ունել պատերազմաւ, 9. ոչ կարէին զդէմ նորա ունել. 69: | Ոչ ոք կարէ զդէմ ունել քաջութեան նորա. 199: |
| զարկեալ զճակատն, 55. զարկանէին եւ ընկենուին զԱնտիոքոս ի խոնարհ. 8: | զարկանէին թագաւորին Պապայ. 196: |

| *Սեբէոս:* | *Փաւստոս:* |
|---|---|
| արքունական կոյսենիցն. 1, 28—29, 45: | բնակութիւն իւրոց կոյսենիցն, 33. յեպիսկոպոսական կոյսենէն, 97: |
| մեծարէ զնա մեծապէս պատուով. 25: | մեծապէս մեծարեցաւ ի նմանէ. 51, 204, 124: պատուէր զԱրշակ մեծապէս. 132 (Նորայր՝ Կորիւն, էջ 325): |
| հասեալ ինչ իցէ գործ պատերազմի. 42: | հասանել ի գործ պատերազմի. 19: |
| կալաւ ընդ նմա գործ պատերազմի. 77, 82, 153: | պատրաստեալ էին ի գործ պատերազմի. 200 եւն: |
| Այն ամենայն ի ձեռն այլոց գրեցաւ. 23: | այն ամենայն ի ձեռն այլոց գրեցաւ. 1: |
| Բազումք խոցոտեալ նետիւք ի խորշն դժկոտս. 148: | Ի թաւուտ խորշից մամխեացն. 98: |
| հանդերձ ամենայն քաղաքօք եւ բնակչօք. 77: հանդերձ կանամբք իւրեանց ... հանդերձ միաբանութեամբ ... հանդերձ միաբանութեամբ... հանդերձ աշխարհաւն իւրեանց. 152: | հանդերձ զօրօքն 63, 13 եւն (Նորայր՝ Կորիւն 327): |
| Իբրեւ գիշերամուտ եղեւ ի սահմանս Ա. գաւառին. 94: որք հմուտ էին ... կռուել ռազմի նիզակամարտ ճակատի. 51: | մինչ արքունական բանակին լինէր գիշերամուտ, 118. գիշերամուտ (տպ. միջանբոս) լինէր յերկիրն Հայոց, 154. գունդն յառաջամարտ երթայր. 145: |
| ինքեանք այսր անդր ասպարեալ խուսափէին. 54: | թէ զիարդ հապ ցրուեցան այսր անդր ... եւ սկսան ասպարէլ գնալ ի |

| *Սեբէոս:* | *Փաւստոս:* |
| --- | --- |
| | *բանակէն Հայոց թագաւորին.* 159: |
| *ոմանք ի Նոցանէ ըստ մոգութեամբ հաւատոյն զբանս խորհրդեանն յանկն թագաւորին.* 54: | *Եւ այն բանքն... վաղվաղակի յանկն զօրավարին Պարսից հասանէին ի բերանոյ շորկն ըստ մոգն... Փիսակայ.* 51: |
| *զի մի եւ Նոցա հասցէ մեռանել ի կողմանս Թրակացւոց, այլ կեալ եւ մեռանել ի վերայ աշխարհին իւրեանց.* 54: | *Ի վերայ աշխարհին կեալ եւ մեռանել ի վերայ անուանն քաջութեան...* 213. *ի վերայ աշխարհին մեռանել.* 256, 257: |
| *հրաման ետ կապել զնա ոտիւք եւ ձեռօք.* 70, 93. *կապեալ ոտիւք եւ ձեռօք.* 8: | *Ոտիւք եւ ձեռօք եւ պարանոցաւ կապելով:* |
| *Բայց ինձ այս կարի է, զի ապրեցաւ տիրատեացն այն (Վահրամ).* 40: | *Այլ իբրեւ մեռաւ (Մանուէլ)... ամենայն մարդ իբրեւ զհօրէ կարի առնէին զնմանէ.* 258 (*հմմտ. Նորայր՝ Կորիւն,* 374): |
| *ի խաղաղութեան եւ ի շինութեան պահեսջիր.* 76, 77: | *Կայր... աշխարհ ի շինութեան եւ ի խաղաղութեան.* 20: |
| *առ աւար եւ զկապուտ բանակի նոցա.* 94 *եւն:* | *առին զկապուտ զաւար բանակին.* 56, 131 *եւն:* |

*Համեմատութեան կը դնեմ նաեւ հետեւեալ բառերը Սեբէոսի եւ Փաւստոսի. Նաւրաման* 44 (*երկիցս*) = 190 (*երկիցս*)։ *Խորհուրդ միաբանութեան* 95 = 19, 262 *եւն. ի Թիկունս օգնականութեան* 66 = 245. *յանկարծօրէն* 26, 66, 80 *եւն* = 247.

ստէպ. աշխարհաշէն 28 = 28. հայակոյտ զօրք 57 = նախարարակոյտ 26 (հայակոյտ, Ագաթ. 39). բանակետղ զօրաց 39, 75 = 120:

Հ. Մատիկեան համեմատութեան կ'առնու նաեւ՝

| | |
|---|---|
| Ըստ լոյս համբաւոյ լոյժ տարփեալ էր ի վերայ անձին եւ գեղոյ նորա գեղեցկութեանն. 5: | Առ համբաւ ցանկութեան անուանն տարփեալ լինէր. 99: |

Սեբիոսի յատուկ ոճն է լուր համբաւոյ. հմմտ. "իբրեւ լուան զլուր համբաւոյ նորա", էջ 65: Լուր համբաւոյն ելեալ տարածանէր ընդ ամենայն երկիր 71:

3. Ագաթանգեղոսի մատեանը թէեւ կ'ակնարկուի անգամ մը իբրեւ "Գիր սրբոյն Գրիգորի" (էջ 121), բայց այն տեղիքը կը վերաբերի Հայոց առ Կոստանդ կայսր ուղղած թղթին, գոնէ այժմեան ձեւին մէջ: Սեբիոսի ծանօթ եղած է սակայն այն Մատեանը եւ օգտուած է անկէ այնպէս ինչպէս Փաւստոսէն: Աւելորդ կը համարիմ օրինակներով խօսիլ (հմմտ. հատուած մը քիչ վարը):

4. Կ'երեւայ թէ աչքի առջեւ ունեցած է նաեւ Եւսեբեայ Ժամանակագրութիւնը, յատկապէս Նախերգանքին համար[1]:

5. Կարդացած է նոյնպէս Եղիշէի Պատմութիւնը Վարդանանց պատերազմին. թէեւ

1 Հմմտ. Խալաթեանց, անդ, էջ 63—73. Տաշեան՝ Արշակունի դրամներ, Բ, էջ 284—293:

այս մատեանը բացայայտ չի յիշատակեր, բայց կու տայ Եղիշէի պատմութեան բովանդակութիւնը[1]՝ յաւելլով թէ “այն ամենայն ի ձեռն այլոց գրեցաւ, որպէս ցուցանէ նոյն իսկ պատմութիւնն„ (էջ 23)։ Թէ նաեւ Ղ. Փարպեցի ծանօթ էր իրեն, կարելի չէ հաստատել։

6. *Նամականի*։ Ստէպ կ'օգտուի Սեբէոս զինուորական եւ հայրապետական դիւաններէ. տեղ տեղ նաեւ ամբողջութեամբ տրամադրելի եղած են իրեն երկուստեք թղթակցութիւններ. այսպէս կրցած է յառաջ բերել Վահրամ Միհրեւանդակի թղթերն առ Մուշեղ Մամիկոնեան եւ Մուշեղի պատասխանը. Մոդեստոսի թուղթն առ Կոմիտաս կաթողիկոս եւ վերջնոյս պատասխանը. Ներսէս Շինողի օրով (646?) Հայոց առ Կոստանդ կայսր գրած ընդարձակ թուղթը[2] եւ այլն։

7. Բաց ի այսպիսի գրաւոր տուեալներէ քաղած է Սեբէոս տեղեկութիւններ *անգիր աւանդութենէն* եւ ականատեսներու բերանացի վկայութիւններէն։ Այսպէս հնագոյն շրջանի՝ Հայոց նախնական պատմութիւնը յեցած է ժողովրդական անգիր “զրոյցներու„ կամ “սուտ առասպելներու„ վրայ. Նոյնպէս անշուշտ նաեւ իւր միջավայրէն հեռու գործուած դէպ-

---

1 Կիւլէսէրեան՝ Եղիշէ, քննական ուսումնասիրութիւն, Վիեննա 1909, էջ 112—113։

2 Հ. Գաթըրճեան, Եւրոպա 1852, Թ. 21, կը կասկածի թղթիս վաւերականութեան վրայ, նկատելով զայն “անյարմար եւ հակասական խօսքերու ծրար մը„։

քերու պատմութիւնը հաւաքուած է բերանացի տեղեկութիւններէ, քանի որ յայտնի չէ թէ ունէր ձեռքը գրաւոր աղբիւր այս մասին։

## 8.

Նախերգանքի սկզբնաւորութիւնը կարօտ է սրբագրութեան: — Սեբէոսի Պատմութեան մութ, եւ ըստ իս, շատ խանգարուած տեղերէն մին է սկզբնաւորութիւնը (էջ 1—2)։ Կ'երեւայ թէ հնագոյն օրինակը հոս ի սկզբան շատ մաշած էր եւ քայքայուած, որով մուտ գտած են վրիպական ընթերցուածներ եւ տողերու ետեւառաջութիւն։ Ինչպէս նկատեցինք վերը, առ հասարակ Սեբէոսի բնագիրը կարօտ է մանր բաղդատութեան հնագոյն օրինակի մը հետ. քիչ մը մտադիր ընթերցում բաւական է մատնանիշ ընելու համար աղաղակող վրիպակներ[1]։ Այս խանգարումը սկզբնագրին առիթ տուած է բանասէրներու յայտնելու պէսպէս կարծիքներ Նախերգանքի շուրջը։ Այստեղ համարձակութիւն պիտի առնում փորձել վերականգնել սկզբնաւորութիւնը քանի մը յանդուգն սրբագրութիւններով։

---

1 Մալխասեանց՝ Սեբէոսի Պատմութիւնը, էջ 109—114 տուած է քանի մը մանր սրբագրութիւններ։ Անոնց թիւը կարելի է դեռ երկարցնել. Հմմտ. ինչ ինչ գրութեանս վերջը։

## *Սկզբնաւորութեան վերակազմուած բնագիրը:*

*“Եւ եղեւ ոչ ի կամայական պիտոյից վարժ խուզակի զանձառոյգն ձկարագրել[1] ժամանակ եւ զնախնի քաջացն ծեռնարկելով դրոշմել վիպասանութիւնս[2], զառաւն[3] յիշատակել զառասպելս[4]. նախ զնախնեացն պատմութիւնս՝ ուստի եղեւ սկիզբն ամենայն երկրի շինուածոց[5] լրմանց, եւ անտի ի սոյն[6] պատուաստելով[7] յաւելել զզրուցակարգութեան վէպս հսկայազանցն եւ զառասպելս ունայնս անհանճար զրու-*

---

* Բնագիր առնուած է W = մեր Մատենադարանի թ. 52: $W_1$ = մեր Մատենադարանի թ. 86: M = Միհրդատեանի 1851ի տպագրութիւնը: P = Պատկանեանի Բ տպագրութիւնը (1879):

1 Զանստարագրել WMP. ջանս (ի լուս. զանս) ստարագրել $W_1$: Այլ եւ այլ սրբագրութիւններ առաջարկուած են (հմմտ. Խալաթեանց՝ անդ, էջ 37 ծն.), Պատկանեան (ռուսերէն թրգմ. էջ 1) կը կարդայ՝ ջան ստորագրել. Ֆէտտէր՝ Հայկական աշխատասիրութիւնք, անստերիւր գրել. Մառ՝ զայն ստորագրել. Խալաթեանց՝ զանստորագրեալ:

2 Վիպասանութիւն WM:

3 Զիմ WMP: Հմմտ. վարը՝ “զառասպելս ունայնս„:

4 Իբրեւ շարունակութիւն 1, 3 տողին հոս կը փոխադրեմ 1, 22—2, 3 նախ — զրուցացն:

5 Շինուածոյ W:

6 Ի սոյնս W:

7 Պատուաստելոյ MP. այսպէս նաեւ $W^1$ ի լուսանցս:

ցացն[1]. եւ[2] ի նոյն շարագրելով ասացից զառ ի յապայսն եղելոց[3]. եւ ցուցից համառաւտիւք զարդեաց[4] ժամանակացս զաղետիցս վերաբերութիւն[5]՝ զամս եւ զաւուրս հինգ Թագաւորացն յիշատակելով. անդր[6] հայելով ի բանն Ագաթանգեղեայ[7] փիլիսոփայի[8] Մծուրացւոյ[9], զոր գտի[10] դրոշմեալ ի վերայ արձանի ի Մծուրք[11] քաղաքի՝ յապարանն[12] Սանատրուկ արքայի հանդէպ դրան արքունական[13] տաճարին, ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն: Քանզի զսիւնս տաճարին այնորիկ խնդրեալ ի դուռն՝ արքային Պարսից, եւ բացեալ զաւերածն

---

1 Զաւրացն WMP:

2 Կը շարունակուի 1, 3:

3 Եղելոյ WMP. Հմմտ. էջ 35 “Ես ճառեցից զեղելոցն յերկրի„:

4 “Զաստեաց„, ուղղագրուած “զարդեաց„ W:

5 Վերաբերութեան MP:

6 Անդ WMP. Հմմտ. էջ 151. “անդր հայելով ի կարգս ուսումնասիրացն„:

7 Ի մատեանն (մատեանս W) մարաբայ (մարաբ-բայ M) WMP:

8 Գիլիսոփայի W:

9 Մծուրնացւոյ WMP:

10 Եգիտ WMP:

11 Ի Մծբին WMP:

12 Յապարանս W:

13 Արքունի W1:

վասն սեանցն՝ ուստ[1] դիպան արձանագրին՝ դրոշմեալ ի վերայ վիմի զամս եւ զաւուրս հին[2] Թագաւորացն[3] Հայոց եւ Պարթեւաց յունարէն դպրութեամբ. զոր իմ՛ զտեալ[4] ի նորին դաստակերտսն[5]՝ կամեցայ մեզ զրուցակարգել. քանզի այս սիւն[6] ունէր վերնագիրն[7] այսպէս. ԵՍ ԱԳԱԹԱՆԳԵՂՈՍ[8] ԳՐԻՉ ԳՐԵՑԻ Ի ՎԵՐԱՅ ԱՐՁԱՆԻՍ ԱՅՍՈՐԻԿ ԻՄՈՎ ՁԵՌԱՄԲՍ ԶԱՄՍ ԱՌԱՋԻՆ ԹԱԳԱՒՈՐԱՑՆ ՀԱՅՈՑ, ՀՐԱՄԱՆԱՒ ՔԱՋԻՆ ՏՐԴԱՏԱՅ ԱՌՆԱԼ Ի ԴԻՒԱՆԷ ԱՐՔՈՒՆԻ. զոր փոքր մի եւ[9] ապա յիւրում տեղւոջն տեսցես զպատճէնն։

Բայց ես նախ առաջին զվէպս յահեղն արքայ եւ յարի այրն սկսայց ասել

---

1 Ըստ դիպան WMP ըստ դիպաւ արձանագրիս W¹։ Իմա՛ անդ դիպան = Հոն հանդիպեցան. Հմմտ. Սեբ. էջ 50. «ոչ դիպան նմա». էջ 98. «նա դիպաւ»։

2 Հինգ WMP հաւանօրէն հետեւելով վերը էջ 76, տող 5 ակնարկուած «հինգ Թագաւորացն»։

3 Թագաւորաց W։

4 Գտեալ ի միջադէտս MP։ Զունի W, ինչպէս նաեւ Լէյմ. Թիւ 611. Հմմտ. Նոյեան Աղւանի. Թ. 52։

5 Աշակերտացն WMP։

6 Այսու WMP։

7 Վերագիրն W¹։

8 Ըգաթանգեղոս, սրբագրուած՝ Ագաթանգեղոս W։

9 Եւս W¹։

...[1], զոր ի մեծ երկանցն աշտարակին յղութիւն ծնանելով[2] ցրէր ընդ մեծ անապատ զանթիւ ակայս[3] անլուրս ի ծայնից. ուաղ առնր ի վերայ առն ընկերի առնոյր Բելն[4] Տիտանեան, որ զառաջինն թագաւորեաց ի վերայ երկրի ...։,,

Այս սրբագրութիւններս արդարացնելու համար հետեւեալ դիտողութիւններն միայն պիտի ընեմ.

1. Վրիպակներու մեծ մասը վերջին ընդօրինակողի գրչէն է. ընդօրինակողը ունենալով աչաց առջեւ հին, մաշած, շատ տեղ անընթեռնլի բնագիր մը, ստիպուած է գուշակութեանց դիմել. այսպէս ըրած է նաեւ այլուր։

2. Բայց մաս մը հին կ'երեւայ. այսպիսիներու թիւին մէջ է «ի մատեանս Մարաբայ փիլիսոփայի Մծուրնացւոյ». այսպէս կարդացած է արդէն հին օրինակին մէջ Սիմէոն Ապարանեցի (Վիպասանութիւն, էջ 17).

---

1 Հոս բնագրէն քանի մը բառ ինկած կ'երեւայ։

2 Հմմտ. Ագաթանգեղոս՝ էջ 317–319. "Եւ հայեցեալ ի պատուհասն յառաջին եկեալ ջրհեղեղին սկսան գործել զաշտարակն ... իսկ յղ—բէ—ն նոցա ծնոյց [illegible] միմեանց [illegible] չփոթութիւն ... յղացան զանօրէնութիւն, ծնան զբազմաձայն լեզուաց բաժանումն, զի մի լուիցէ այր ընկերի բարբառոյ, ի միմեանց մեկնելով ցրուեցան"։

3 Անթիւ որ ի կայս անլուրս ձայնից անդադար ի վերայ... WMP։

4 Սուրն Տիտան. յորում առաջին WMP։

Ի Մարաբայ մատեանս մըտեալ
Զմըծբըունացւոյնըն վերծանեալ:

Նոյնպէս հին է “Հինգ Թագաւորաց„ ընթերցուածը, ըստ Նոյն Ապարանեցւոյ.

“Արանց հընգից Թագաւորեալ
Հայոց եւ Պարթեւաց տիրեալ„:

Երկու ենթադրութիւն կրնայ այս կէտին բացատրութիւնն ըլլալ. բնագրին մէջ “ի Մծբին քաղաքի ընթերցուածը շատ վաղ ժամանակ մը մուտ գտած է Սեբիոսի քով եւ այսպէս թելադրած է Խորենացւոյ՝ Միջագետքի Մծբին քաղաքի մէջ ասորի Մար Աբաս մը հնարել. միւս մասը — “ի մատեանս Մարաբայ փիլիսոփայի[1] Մծուրնացւոյ„ — անագանագոյն ժամանակ մը ներս առնուած է Սեբիոսի քով՝ ազդեցութեամբ Խորենացւոյ:

## 9.

*Սեբիոս, Խորենացի եւ Մարաբայ մատեանը:* — Թէ Սեբիոսի մատեանը աղբիւր եղած է Խորենացւոյ՝ Հայոց Նախնական պատմութեան համար, նոյն իսկ բառական փոխառութիւններով — թէեւ առանց աղբիւրն մատնանշելու — զայս գեղեցիկ ապացուցուցած է Գրի-

1 Ձեռագրին “փիլիսոփայի„ ընթերցուածը շատ կասկածական կ'ընէ բառիս հնութիւնը բնագրին մէջ:

գոր Խալաթեանց[1]։ Սակայն Խորենացի հակառակ իւր մեծ զգուշութեան՝ լռութեան տալու Սեբէոսի մատեանը, ակամայ ակնարկութիւն ըրած է իւր աղբիւրի՝ Սեբէոսի մասին, երբ իւր Մեկենասին վստահութիւնն իւր տողերու վրայ հրաւիրելով դիտել կու տայ թէ կայ նաեւ ուրիշ հեղինակ մը որ "ի բայ բանից եւ անոճ իմն յաղագս Հայկայ եւ նմանեացն կակաղէ„ (Ա. իբ)։

Կ'երեւայ թէ Խորենացւոյ ձեռքը գտնուած օրինակին մէջ արդէն՝ *Մծուրքը* կարդացուած է *Մծբին* եւ այսպէս Սանատրուկի ապարանքը փոխադրուած է Մծբին (հմմտ. Խոր. Բ, լզ. "այլ որ ինչ գործք եղեալ Սանատրկոյ՝ ոչ ինչ յիշատակաց արժանի համարեցաք բայց ի շինուածոյ Մծբին քաղաքի, զի ի շարժմանէ խախտեալ՝ քակեաց եւ վերստին շինեաց պայծառագոյն, եւ պարսպեաց կրկին պարսպով եւ պատուարաւ. եւ զինքն անդրի ի միջին հաստատեաց, դրամ մի ի ձեռին ունելով, որ նշանակէ այսպիսի ինչ. եթէ ի շինել քաղաքիս ամենայն գանձքս ծախեցան, եւ այս միայն մնաց„)։ Այսպէս Խորենացի կ'անգիտանայ բոլորովին Մծուրքի ապարանքին գոյութիւնը, թէեւ այն բացի Սեբէոսէ նաեւ Փաւստոսէն յիշուած էր (տես վարը), հաւանօրէն Թ. դարուն Մծուրքի անունն ալ, տեղն ալ, աւերակներն ալ անյիշատակ անհետացած ըլլալուն համար։

---

1 Г. Халатянцъ, Армянскій эпосъ I, էջ 106–125 եւ. II, էջ 19–31։

Բայց թէ Խորենացւոյ օրով ալ «ի բանսն Ագաթանգեղեայ փ. Մծուրացւոյ» փոխուած էր «ի մատեանս Մարաբայ փ. Մծուրնացւոյ», ինձի անհաւանական կը թուի եւ կը միտիմ այն մտքի թէ անագանագոյն ժամանակի գրիչ մը, որ Սեբէոսի մատենին մէջ նաեւ ուրիշ տեղեր ձեռք խաղցուցած է (հմմտ. վարը՝ Խորենացւոյ եւ Ասողկան հատուածը), այստեղ ալ հնագոյն պատմութեան աղբիւր ներկայացուցած է Խորենացւոյ «Մատեանն Մարաբայ... զոր եգիտ (Մարաբաս) դրոշմեալ ի վերայ արձանի ի Մծբին քաղաքի»: Արձանագրութեան յիշատակութիւնն Մծբինի մէջ դիւրաւ պիտի անդրադարձնէր Խորենացւոյ Պատմութեան ընթերցողի մը, թէ խօսքը անպատճառ Վաղարշակայ Մծբին քաղաքի մէջ դրոշմել տուած արձանի մասին է, ուր սակայն Մար Աբաս ոչ թէ «եգիտ», այլ գրեց կամ գրել տուաւ: Մարաբայ մասին Խորենացին կը պատմէ. «Արշակ մեծ, արքայ Պարսից եւ Պարթեւաց թագաւորեցուցանէ զեղբայր իւր զՎաղարշակ ի վերայ աշխարհիս Հայոց... եւ քաղաք թագաւորութեան տայ նմա զՄծբին... կամ եղեւ գիտել սորա, թէ ո՞յք արդեօք եւ որպիսի՞ արք տիրեալ իցեն ի վերայ աշխարհիս Հայոց մինչեւ ցնա... եւ գտեալ զոմն ասորի Մար Աբաս Կատինայ, այր ուշիմ եւ վարժ քաղդէացի եւ յոյն գրով, զոր յղէ առ եղբայրն իւր Արշակ մեծ արժանի ընծայիւք, բանալ նմա զդիւանն արքունի:... Եւ ընկալեալ Արշակայ մեծի զգիրն ի ձեռաց Մար Աբայն

կատինայ... Հրամայէ առաջի առնել նմա զդիւանն արքունի որ ի Նինուէ... եւ խուզեալ նորա զամենայն մատեանսն՝ գտանէ մատեան մի հելլենացի գրով, յորոյ վերայ էր, ասէ, վերնագիր այսպիսի. Այս մատեան հրամանաւ Աղեքսանդրի ի Քաղդէացւոց բարբառոյ փոխեալ ի յոյն, որ ունի զբուն հնոցն եւ զնախնեացն բանս։... Յայսմ մատենէ Մար Աբաս կատինայ զԹերոյ ազգիս միայն հանեալ զպատմութիւն հաւաստի՝ բերէ առ Վաղարշակ արքայ ի Մծբին յոյն եւ ասորի գրով։ Զոր առեալ... Վաղարշակայ... դնէ յարքունիսն ի պահեստի մեծաւ զգուշութեամբ, եւ զմասն ինչ յարձանի հրամայէ դրոշմել։ Յորմէ մեր (Խորենացւոյ) հաւաստի ի վերայ հասեալ կարգի զրուցացս՝ երկրորդեմք այժմ քում (Սահակայ Բագրատունւոյ) հարցասիրութեանդ„ (Խոր. Ա, ը—թ)։

“Մարաբայ„ անունը Սեբէոսի մէջ յետսամուտ ըլլալը Խորենացւոյ այս տողերու վրայ հիմնուած՝ ակներեւ է։ Գրիչը առնլով Խորենացիէն “Մատեանն Մարաբայ„՝ չէ անդրադարձած թէ ըստ Խորենացւոյ՝ մատեանը չի վերաբերիր Մարաբայ, այլ թէ նա միայն դիւանէն իբրեւ հանողն եղած է։ Դարձեալ Խորենացւոյ հետ հակասութեան մէջ է “զոր եգիտ (Մարաբաս) դրոշմեալ ի վրայ արձանի„ նախադասութիւնը, վասն զի ինչպէս դիտել տուի քիչ յառաջ, ըստ Խորենացւոյ Մար Աբաս ոչ թէ գտաւ այլ հրամանաւ Վաղարշակայ դրոշմեց ի վերայ արձանի։ Հնագոյն ընթերցուածի հետքն

մնացած է սակայն Մծուրնացւոյ գրութեան մէջ, ուր գրիչն թէեւ Մծբնացի ենթադրած է[1], բայց յիրականին Մծուրացին ակնարկուած է՝ այս ինքն Ագաթանգեղոս ի Մծուր(ք) քաղաքէն։ Սեբէոս Ագաթանգեղեայ արձանագրութիւնն գտնելով Մծուրքի աւերակներէն բերուած սիւներու վրայ՝ կրնար առանց դժուարութեան կոչել գրիչը Ագաթանգեղոս փիլիսոփայ Մծուրացի. բայց իւր մտքէն շատ հեռու էր անշուշտ Մծբինը. եւ քանի որ խօսքն արձանագրութեան մասին է, զոր ինքը գտած էր («իմ գտեալ») «ի դուռն արքային Պարսից, փոխադրուած սիւներու վրայ», «Մատեանն Մարաբայ» բնաւ չի կրնար յարմարութեամբ ագուցուիլ Սեբէոսի շինուածքին մէջ. գոնէ ինձի անհասկանալի է այս աղերսը։ Վերականգնելով ըստ իմաստին խանգարուած բնագիրը, կը կարծեմ թէ ամբողջ շինուածքն իւր միաձոյլ կերպարանքը կ'առնու։ Մար Աբաս գործ չունի Սեբէոսի հետ. եւ անոր մատեանը իբրեւ Խորենացւոյ հնարագիտութիւնը կը մնայ ստացուածք Խորենացւոյ։

---

1 Բայց ոչ իրաւամբ ի հարկէ։ Սեբէոսի մէջ Մծբին անունը պէսպէս ուղղագրութեամբ աւանդուած է, «Մծբին քաղաք» (1, 9, 33, 45) «Մրծանայ», «Մրծունին» (10, 58, 92), Մրծունին 34։ Այս ձեւերը հաւանօրէն ՄԾԲԻՆի սխալ ընթերցուածներն են՝ կարդացուած ՄԾՐԻՆ = ՄՐԾԻՆ. յուն. Νιζιβις, աս. Nṣiwin, աւելի մէկ անգամ Փաւստոսի քով Նծբին (էջ 136). հմմտ. եւ Բարծումէա Ընծբէհնայ (Մծբնացի)- Գիրք Թղթոց էջ 67, իսկ էջ 53, «Հնծբհնա»։ Մծբինէն դժուարաւ թէ Մծուրնայի յառաջանար։

Այսպէս Խորենացի ազդուած Սեբէոսէն՝ փոխադարձաբար ազդած է Սեբէոսի վրայ՝ անագանագոյն ժամանակի ընդօրինակողներու ձեռօք:

Ագաթանգեղոս: — Սեբէոս իւր գտած արձանագրութեան մէջ կարդացած է "վերնագիրն" (ἐπίγραμμα) այսպէս. "Ես Ագաթանգեղոս գրիչ գրեցի ի վերայ արձանիս այսորիկ իմով ձեռամբս զամս առաջին թագաւորացն Հայոց, հրամանաւ քաջին Տրդատայ առեալ ի դիւանէ արքունի":

Այս վերնագիրը կը յիշեցնէ մեզի "զԳիր Սրբոյն Գրիգորի" (Սեբ. էջ 121), որուն հեղինակն է Ագաթանգեղոս, ինչպէս Յառաջաբանին մէջ կ՚ըսուի (էջ 9—10). "Հրաման հասեալ առ իս ումն Ագաթանգեղոս, որ ի քաղաքէ ի մեծն Հռովմայ, եւ վարժեալ հայրենի արուեստիւ, Հռոմայերէն եւ Յունարէն ուսեալ դպրութիւն, եւ ոչ կարի ինչ անտեղեակ լեալ ձեռնարկութեան նշանագրաց, եւ ի վերայ այսորիկ հասեալ ի դուռն Արշակունւոյ, յամս քաջի եւ առաքինւոյն ... Տրդատայ ... արդ հասեալ առ իս հրաման ի մեծ արքայէն Տրդատայ" եւն:

Երկու իրարմէ անջատ աղբիւրներու միաձայնութիւնը կը թելադրէ ինձ հետեւեալ խորհրդածութիւնը. Գրիգորի Պատմութեան հեղինակը Ե. դարուն ծանօթ էր Մծուրքի արձանագրութեան. ինքն ալ արձանագրութիւնս հիմ ընտրած է իւր Պատմութեան եւ զայն հրատարակած է յանուն Ագաթանգեղեայ: Անշուշտ Գրիգորի Պատմութիւնը իւր նախնական խմբա-

գրութեամբ չէ հասած մեզի, այն կերպարանաց մէջ երբ մասն կը կազմէր Փ. Բիւզանդայ իբրեւ Բ. դպրութիւն։ Եւ եթէ այժմ Ագաթանգեղեայ անունը այս Պատմութեան մէջ հանելուկ մը, առեղծուած մը կը նկատուի, կասկածը բնաւ պէտք չկայ տարածել նաեւ արձանագրութեան վրայ, որուն վերնագրին մէջ մէն մի բառ (թերեւս իր համառօտութեան մէջ) ունի հարազատութեան ամէն կնիք[1]։ Հարազատութեան ցայտուն նշանակ մը կը համարիմ ի մէջ այլոց “գրիչ„ բառն, որ յունարէն սկզբնագրին γράφευς = գրիչ, փորագրիչ բառին բառական թարգմանութիւնն է։

Ագաթանգեղոս ապրած է քաջին Տրդատայ Հայոց թագաւորի օրով եւ անոր հրամանաւ արձանագրած է Հայոց առաջին թագաւորաց անունները, “առեալ ի դիւանէն արքունի„։ Դժուարին է այժմ նոյնացնել Տրդատի անձնաւորութիւնը արշակունի տան երեք եւ աւելի համանուն թագաւորաց թուին մէջ, քանի որ արձանագրութեան բովանդակութիւնը, ուր յիշուած էին “անուանք առաջին թագաւորացն„ մինչեւ ցՏրդատ, այժմ պահուած չէ մեզի։ Սակայն նկատելով որ Գրիգորի Պատմութեան հեղինակը՝ արձանագրութեան Ագաթանգեղոսը

---

[1] Ընդ հակառակն խալաթեանց՝ Մարաբա Մծուրնացի, էջ 106 այս կէտն ապացոյց կ՚առնու ի նպաստ Նախերգանքի անհարազատութեան։ Տարբեր պիտի ըլլար իր եզրակացութիւնը, եթէ անդրադառնար Սեբէոսի խօսքերուն (“փոքր մի եւ ապա յիւրում տեղւոջ„) ճշգրիտ իմաստին։

վերջին Տրդատի օրով գիտէ, կրնանք ենթադրել, թէ նաեւ թագաւորացանկը կը հասնէր մինչեւ Տրդատ մեծ։ Յամենայն դէպս Տրդատ Ա.ի մասին կարելի չէ խորհիլ. Սանատրուկէն ետքը կարճ ժամանակով միայն նստաւ Տրդատ Բ. (217—222), առանց նշանաւոր գործունէութեան։ Այսպէս կու գանք կը հասնինք դարձեալ Տրդատ Գ.ի, որուն Դիոկղետիանոսի օրով միւսանգամ Հայոց թագաւոր կարգուելովը Հայոց մէջ "յատուկ մտօք արշակունի հարստութիւն մը"[1] սկիզբ առաւ։

*Արձանագրութիւնը։* — Թէ արձանագրութիւն մը "զամս առաջին թագաւորացն Հայոց", այս ինքն "զամս եւ զաւուրս հին թագաւորացն Հայոց եւ Պարթեւաց" պարունակող, կրնար յունարէն լեզուով փորագրուած ըլլալ Մծուրքի արքունի պալատան սիւներու վրայ, հարկ չկայ տարակուսիլ եւ ժխտել անդէն եւ անդ։ Հիներն ունէին սովորութիւն իրենց տոհմածառն, հարստութեան ցեղաբանութիւնը դարուց ի դարս անմահացնել քարերու վրայ։ Այսօր ամէնէն կարկառուն օրինակն է Նեմրութ-տաղի բարձանց վրայ Կոմագենէի Անտիոքոս Ա. թագաւորին յունարէն արձանագրութիւնը Քրիստոսէ յառաջ առաջին դարուն հոն կանգնուած հսկայագործ տաճարին արձաններու վրայ, ուր փորագրել տուած է իւր նախնեաց տոհմածառն, ցեղին տոհմաբանութիւնը, զոր

1 Ց. Մարկուարտ, ՀԱ. 1906, էջ 38։

1883ին Karl Humann եւ Otto Puchstein երեւան հանեցին փլատակներու տակէն եւ հրատարակեցին[1]։ Նեմրութ տաղը շատ հեռու չէր իյնար հայկական սահմաններէն եւ յատկապէս Մծուրքէն, կոմագենէի նախկին տէրերն հայեր էին եւ միշտ յարաբերութեան մէջ ապրած հայ արքունիքին հետ, այնպէս որ իրենց օրինակն, նաեւ դարեր յետոյ, կրնար թելադրած ըլլալ հայ արշակունի տան նոյն ոճով գծել ազգաբանութիւնը արշակունի հարստութեան, մանաւանդ երբ Տրդատ Գ.ի օրով այս հարստութիւնը ամրացաւ հայկական գահին վրայ։ Հայ արշակունի տունը մօտաւոր արենակցութիւն ունէր Պարթեւտան հետ. եւ փորձելով գծել հայ հարստութեան ցեղաբանութիւնը անոր հետ անհրաժեշտաբար պիտի տրուէր նաեւ Պարթեւ արշակունեաց տոհմածառը։

*Մծուրք:* — Մծուրքի պալատան մասին դժբախտաբար շատ նուազ են մեր տեղեկութիւնները։ Փաւստոս Բիւզանդ է որ այս նկատմամբ առաջին անգամ յիշատակութիւն ըրած է։ Փաւստոս պատմելով թէ ինչպէս Շաւարշ Արծրունի սպաննեց Հայր մարդպետը, երբ սա կը շրջէր Տարօնի մէջ գտնուած արքունի կալուածները, կը գրէ (Դ, ժգ).

«Գնայր մարդպետն Հայր ի սուրբ տեղեացն (յԱշտիշատայ) եւ էջ յափն գետոյն հոսանացն

1 Reisen in Kleinasien und Nordsyrien, beschrieben von Karl Humann und Otto Puchstein, Berlin 1890. Հմմատ. այս Հ. Յ. Տաշեան՝ Արշակունի դրամներ, Բ, էջ 217–219։

Եփրատու, առ հովիտն Թանձրախուռն անտառին, ի գետախառնունսն երկուց գետոցն, ի թաւուտ խարձիցն մամխեացն, որ ի տեղւոյն ի հնոցն իմն շինած քաղաք, զոր շինեալ Սանատրուկ արքայի, որում անուն տեղւոյն Մծուրք կոչի:„

Մծուրքի ճշգրիտ տեղն անծանօթ է այժմ: Յ. Մարկուարտ, որ ջանացած է տեղագրութիւնը տալ, այսպէս կը գրէ. "Սանատրուկ թագաւորին հիմնած Մծուրք քաղաքն ամենեւին գործ չունի ոչ Մծբինի, Մրծուինի հետ, եւ ոչ ալ բարձր Հայոց Մզուր գաւառին հետ, որ Ասորեստանցւոց Մուզրի անուանած երկիրն է, թէեւ Մար Աբաս (= Սեբէոս) այս երեք անունները յայտնապէս իրարու հետ կը միացնէ:

Ինչպէս որ Փաւստոսի պատմութենէն բացայայտ կը տեսնուի, Մծուրք էր արեւելեան Եփրատայ (Մուրատ-սուի) վրայ, զոր Հայք սովորաբար Արածանի կ'անուանեն, իսկ Փաւստոս եւ Ագաթանգեղոս՝ որ յոյն համարուիլ կ'ուզեն, Եփրատ: Քաղաքին տեղը Տարօնոյ մէջ փնտռելու ենք, ուր էին արքունի կալուածները՝ որոնք այլ կալուածներու պէս Հայր մարդպետի հսկողութեան տակն էին (Փաւստ. էջ 117, 195): Այն երկու գետերն՝ որոնց խառնուրդին մօտերն էր քաղաքն, են Արածանի (Մուրատ-սու) եւ Մեղ (Քարա-սու), որ Տարաւնէն կ'անցնէր: Ուստի հարկ է որ Մծուրք՝ Ողական ամրոցին մօտերն եղած ըլլայ: Այս տեղ են

փաւստոսի յիշած հոսանքները։ Բայց հաւանական չէ որ Մծուրք նոյն ըլլայ Ողականի հետ։

Տոմաշէկ Ողականի նկատմամբ կ'ըսէ. "Այս օղաձեւ ամրոցին աւերակներն այսօր ալ կեցած են Մշոյ դաշտին արեւմտեան ծայրը՝ Արածանւոյ աջ եզերքին վրայ, ուր ցից ժայռերը գետը նեղցնելու կը սկսին" (Սասուն եւ Տիգրիսի աղբերաց սահմանները, Վիեննա 1896, էջ 15)։

Սանատրուկի հիմնարկութիւնը՝ ռազմագիտական տեսակէտէ՝ շատ կարեւոր դիրք ունէր, վասն զի կ'իշխէր հաղորդակցութեանց՝ Եփրատայ (Բալու եւ Զիատա-Խարբերդի վրայէն՝ դէպի Մելիտինէ), Եփրատայ-Երասխայ կողմերուն (Խնուսի վրայէն՝ դէպի Հասան-քալէ եւ Կարին) եւ երկու գլխաւոր քաղաքաց, Տիգրանակերտի (Տաւրոսի վրայէն եւ Նիւմփիոս — Բատման-սուի հովտէն) եւ Արտաշատու հետ (Մանազկերտի եւ Քարաքիլիսէի վրայէն՝ դէպ ի Բագաւան — Իւչ-քիլիսէ կամ Տիատին — Արմաւիր)[1]"։

Սանատրուկ թագաւորեց մօտաւորապէս 114—144 յ. Ք. շրջանին[2]։ Այս երեսնամեայ միջոցին կ'իյնայ Մծուրքի եւ ասոր հետ հաւանօրէն միաժամանակ Ողական ամրոցի շինութիւնը։ Թէեւ Սանատրուկի որդին Վաղարշ Նոր քաղաքի (Վաղարշապատի) մէջ հաստատեց իւր գահը, բայց հաւանօրէն նաեւ Մծուրքի արքու-

---

[1] Յ. Մարկուարդ՝ Էջ մը Հայ Արշակունեաց հնագոյն պատմութենէն. Հանդ. Ամս. 1906, էջ 42—43։

[2] Անդ, էջ 35։

*նիքը եթէ ոչ իբրեւ տեւական բնակարան արքային, բայց դեռ գործածութեան մէջ էր Տրդատայ օրով։*

*Մծուրքի կործանման ժամանակն յայտնի չէ մեզի պատմութիւնէն. Փաւստոս Ե. դարուն զայն արդէն աւերակ գիտէ։ Սեբիոսի օրով կ'երեւայ թէ հին ապարանքին աւերակներն տակաւին ցցուած էին եւ ուշադրութիւն գրաւած կճեայ (մարմարիոնեայ) սիւները։*

*Խոսրովու դաստակերտը։* — *Դժբախտաբար Սեբիոս մանրամասնօրէն չէ պատմած թէ Պարսից Խոսրով թագաւորը ե՞րբ եւ ո՞ւր կառուցած է իր դաստակերտը, որով թերեւս հետաքրքրութիւն արթնցնէր մեր մէջ՝ փնտռելու այդ սիւները։ Տպագրին “ի Նորին աշակերտացն„ ընթերցուածը յամենայն դէպս աղաւաղող վրիպակ մ'է, զոր կ'առաջարկեմ կարդալ “ի Նորին դաստակերտս„, որովհետեւ խօսքը Խոսրովու Նորակառոյց ապարանքի վրայ է։ Գրչագիրներէն մին՝ “միւս օրինակը„, կարդալով “ի Նորին աշակերտացն„ փութացած է նշանակել նաեւ տեղն “ի Միջագետս„, զոր չունի Էջմիածնի թ. 611։*

*Խոսրով Ապրուեզ — որուն մասին է ապահովապէս հոս խօսքը — կը փառաբանուի Պարսիկ մատենագիրներու քով իր անչափ հարստութեանց համար, “որոնք հնարաւորութիւն տուին իրեն ձեռնարկելու մեծամեծ շինութեանց. անոնց թուին մէջ է իր դեռ աւերակներու տակ գտնուող ապարանքը (դաստա-*

կերտը) ի Տիզբոն (Tâq-i-kessa)[1]։ Ըստ Mujmilի Խոսրով շինեց ի Կենաւեր, Բաղդատի եւ Համադանի մէջտեղ, հոյակապ ապարանք մըն ալ Շիրին թագուհւոյ համար։ Համզա կը վերագրէ իրեն նաեւ Ատրուշան մը ի Բարմին Կրմանի[2]։ Հաւանօրէն Տիզբոնի արքունիքն էր այն «մեծ դաստակերտն», զոր կը յիշէ Սեբէոս էջ 64. «Եւ եղեւ յանցանել ձմերանոյն, եւ գալ գարնանւոյն ժամանակի, հասանէին սուրհանդակքն (Խոսրովու Ապրուէզի) հրովարտակօք (առ Սմբատ Վրկան Մարզպան), եւ կոչեն զնա մեծաւ շքեղութեամբ ի դուռն արքունի։ Եւ երթեալ յանդիման լինել թագաւորին ի մեծ անուանեալ դաստակերտին, եւ ելեալ արտաքս ի դահլիճն, նստի ի Բոյս եւ ի Բահզակ»։ Թէ թագաւորանիստ քաղաքն Տիզբոն էր՝ յայտնապէս կը նշանակէ Սեբէոս էջ 107. «զի անդ նստէր թագաւորն Պարսից»։

Այս Խոսրովակերտ դաստակերտը կառուցուած ըլլալու է 590էն ետքը եկող խաղաղութեան տարիներուն։ Պարսկական աւարառութեան մէջ ընդունուած էր նուաճուած երկիրներէն գերի վարել ոչ միայն ամբողջ բնակչութիւնը, այլ եւ ճարտարապետական հոյակապ կտորներ, կճեայ (մարմարիոնեայ) սիւներ եւ խոյակներ, անոնցմով ճոխացնելու Պարսկաս-

1 Ուրիշներ կ'ընծայեն Խոսրով Անուշըրվանի, Շպիգել, էջ 462—463։

2 Fr. Spiegel, Eranische Altertumskunde, III. Leipzig, 1878, էջ 525։

տանի շէնքերը։ Կաղանկատուացի (էջ 100—101) խօսելով Խոսրով Ապրուէզի խորեան զօրավարին արշաւանքներուն վրայ, "էառ եւ հրձիգ արար, կ'ըսէ, զմեծ քաղաքն Երուսաղէմ, ... եւ զսպաս ամենայն սրբութեանց կողմանցն այնոցիկ... Նաեւ զկահս անգամ շինուածոց զարմանալի հոյակապ մայրաքաղաքաց, զսին եւ զխոյակս կճեայս ... (վարեաց ի գերութիւն)։ ... այլ առաւել եւս ոգորէր ընդ ծով եւ ընդ ցամաք եւ զգեղեցկաշէն քաղաքս Հոռվմայեցւոց բնակչօքն իւրովք հանդերձ խաղացուցանէր ի կողմանս Պարսից վասն տենչանաց իւրոց։ Նմանապէս եւ զճարտարս ի նոյն ձեւ օրինակի նստուցանէր (ի քաղաքս իւր) եւ անուանէր (զքաղաքս իւր) զոմն առաւել քան զԱնտիոք քաղաք. եւ զայլս յիւր անուն զառաւելն ի վերայ յաւելեալ"[1]։

Այսպէս ըրած էր նաեւ Խոսրով Անուշըրվան, երբ 540ին գրաւեց Անտիոքը, ուսկից

[1] Կաղանկատուացւոյ ակնարկութիւնը Վեհ Անտիոք Խոսրով քաղաքի մասին է, զոր Սեբ. 28 կը յիշէ խօսելով Խոսրով Անուշըրվանի մասին. "Շինեալ քաղաք եւ անուանեալ զնա Վեհ Անջատոք Խոսրով, զոր անուանեալ Շահաստանին Ոկնոյ կոչեն"։

Մարկուարտ խօսելով այս մասին կը գրէ "Ցուշարձան", էջ 300. "Հոս խօսքը Անտիոքի, Հռովմէական Արեւելքի մայրաքաղաքին գրաւման մասին է (540ին), որ (Սեբ. քով) շփոթուած է Պիսիդացւոց Անտիոքի հետ։ Ալ Մադայնի (Māhōzē, Ktesiphon) քով՝ Խոսրով՝ գերի վարուած բնակչութեան համար շինած է քաղաքը մը, զոր կոչած է Վեհ Անտիոք Խոսրով = Լաւագոյն Անտիոք Խոսրովու։ Որ ըստ Սեբ. կոչուած է նաեւ Շահաստան ի Նոկ (= Նոր Շահաստան. այսպէս կարդա)։

Պարսկաստան փոխադրել տուաւ Հին Անտիոքի բնակչութեան հետ բոլոր գեղարուեստական կտորները որոնք Նորակերտ Վեհ-Անտիոք Խոսրով քաղաքի համար գործածուեցան[1]։

*Արձանագրութեան պատճէնը։* — Զարմանալի չ'երեւայ ուրեմն, երբ Սեբէոս անպաճոյճ խօսքերով կը պատմէ թէ ինչպէս Խոսրով Ապրուէզ իւր Նորակերտ դաստակերտին համար “զսիւնս տաճարին այնորիկ„, որ կը գտնուէր “յապարանս Սանատրուկ արքայի հանդէպ դրան արքունական տաճարին, ծածկեալ յաւերածի արքունական կայենիցն„ Մծուրք քաղաքի, հրամայած է փոխադրել “ի դուռն արքային Պարսից„ ի Տիզբոն. եւ այս առթիւ “բացեալ զաւերածն վասն սեանցն„, հոն հանդիպած են (“անդ դիպան„) “արձանագրին՝ դրոշմեալ ի վերայ վիմի զամս եւ զաւուրս հին թագաւորացն Հայոց եւ Պարթեւաց յունարէն դպրութեամբ„, զոր ինքը Սեբէոս “գտեալ ի Նորին (Խոսրովու) դաստակերտսն„ ուզած է մեզի “զրուցակարգել„ իւր Պատմութեան էջերու մէջ, որուն ամբողջական պատճէնը կը խոստանայ հայերէն թարգմանութեամբ տալ պատշաճ տեղը. “զոր փոքր մի եւ ապա յիւրում տեղւոջն տեսցես զպատճէնն„։

Հեղինակը իւր խոստման հաւատարիմ գտնուած է անշուշտ եւ “յիւրում տեղւոջ„ զետեղած է պատճէնը։ Զուր է սակայն այժմ

1 Spiegel, անդ, էջ 463։

փնտռել զայն։ Ճիշտ այն տեղը, ուր կ՚ակնկալուէր կարդալ պատճէնը, Սեբէոսի բնագիրը մեծ խանգարում կրած է։ Սեբէոս խոստացուած պատճէնը զետեղած էր էջ 6, 24 իբր շարունակութիւն, ուր կը գրէ. “Եւ ծառայեցին (Հայք) Մակեդոնացւոց մինչեւ ցապստամբութիւնն Պարթեւաց ի (տպ. եւ) Մակեդոնացւոց, եւ ցհամբարձումն Արշակունեաց թագաւորութեանն։ Քանզի զսոյն ճառէ ժամանակագիրն (Ագաթանգեղոս)՝ այդպէս, որպէս առաջիդ կայ„։ Կը սպասուէր Հայոց պատմութեան շարունակութիւնը Պարթեւաց օրով։ Արդեամբք ալ էջ 7—9 կը պատմուի գեղեցիկ ոճով Արշակ Ա. Մեծի ապստամբութիւնը Մակեդոնական լուծին դէմ, եւ Հայաստանի անկախութիւնը Պարթեւ հարստութեան տակ. “Յայնմ ժամանակի թագաւորեցոյց Արշակ զորդի իւր զԱրշակ փոքր կոչեցեալ ի վերայ աշխարհին Հայոց ի Մծբին քաղաքի..., որով սկիզբ կ՚առնու պարթեւ արենակցութենէն նաեւ հայ արշակունեաց հարստութիւնը։ Ժամանակագիրը չորս ճիւղ գիտէ պարթեւ արշակունի տան. “Եւ այս են իշխանք Պարթեւաց, որք թագաւորեցին զկնի Արշակայ հաւր իւրեանց ի Բահլ Շահաստան յերկիրն Քուշանաց։ Որդիք չորք ասեն լեալ Արշակայ արքայի Պարթեւաց. զառաջինն ասեն թագաւորեցոյց Թետալացւոց աշխարհին. զերկրորդն ի վերայ Կիլիկեցւոց. զերրորդն ի վերայ Պարթեւաց. զչորրորդն ի Հայաստան աշխարհին„ (էջ 9)։

Մինչեւ այստեղ պատմութիւնը իւր հոծ եւ նշանակալից բովանդակութեամբ «Ժամանակագրին» տողերուն ընդլայնուած խմբագրութեան նկարագիրն ունի։ Այսպէս ճանչցած է նաեւ Վարդան (էջ 31).

«Բայց լուաք եւ տեսաք գրով, թէ որդի էր սա (Վաղարշակ) Արշակայ մեծի, եւ ոչ եղբայր։ Եւ էր բանն այսպիսի, թէ Թագաւորն Պարսից խնդրեաց զսիւնն կճեայ[1]՝ որ ի Մծբին յապարանս արքայութեանն Հայոց. եւ ի յառնուլն գտաւ գիր յունարէն, թէ Ես գրեցի Ագաթանգեղոս. զի մեծն Արշակ ունէր չորս որդիս. զառաջինն թագաւորեցոյց Թետալացւոց. եւ զերկրորդն Լիւրիկեցւոց. եւ զերրորդն Պարթեւաց. զչորրորդն Հայոց. տալով նմա զսահմանն՝ զոր Հայկն[2] ստացաւ զաւակօքն իւրովք, եւ որդւովք եօթն դստերաց իւրոց»։ Նաեւ Ս. Ապարանեցի իւր օրինակին մէջ այսպէս իմացած է (էջ 17—18).

«Եւ զվաղնջուցըն թարքմանեալ,
Հելլէն գրով նուրբըս գտեալ
յԱգաթանգեղոսէ դրոշմեալ
Ի վերնագրէն զայս իմացեալ.
Արանց հընգից թագաւորեալ
Հայոց եւ Պարթեւաց տիրեալ»։

1 Սեբէոս չունի կճեայ, հաւանօրէն Վարդան ազդուած է հոս Խորենացիէն (Բ, լը, «սիւն կճեայ» յիշելիս)։

2 Հմմտ. Սեբ. 3. «Առնու Հայկն զԱրամենակ եւ զկադմոս զորդիս իւր եւ զորդիս նոցա եւ զորդիս եւթանեցունց դստերաց իւրոց, արս հսկայս . . .»։

Պարթեւ եւ Հայ թագաւորներու յաջորդ-արքայացանկը (էջ 9—10) յայտնապէս խանգարուած է՝ կրճատումներով եւ յաւելուածներով. եւ արդէն կ'աղաղակեն զայս Մ. Խորենացւոյ եւ Ստեփանոս Տարօնեցայ անունները հատուածիս ծայրը (էջ 11). “Արդ՝ թէ՞ պիտոյ է քեզ, ով ընթերցասէր, երկրորդեցից ի պատմագրացն Մովսիսի Խորենացւոյ եւ Ստեփաննոսի Տարօնեցւոյ հաւաստի եւ ճշմարիտ մատենագրաց՝ զորդի ի հաւրէ ճանաչել„։ Այս տեղ յետնագոյն գրիչ մը ջանացած է Սեբիոսի անհամաձայնութիւնը ազգային միւս “հաւաստի եւ ճշմարիտ մատենագրաց„ հետ հաշտեցնել լրացնելով (եւ տեղ տեղ կրճատելով) արքայացանկը, մասամբ թերեւս ձեռագրին մէջ թղթերու ետեւառաջութիւն նշմարելով։ Փոփոխութիւնն[1] ակնյայտնի է նաեւ անկէ, որ Հայ թագաւորներու ցանկը կը հասնի մինչեւ Պապի թագաւորութեան վերջը՝ 376 մօտաւորապէս, մինչ արձանագրութիւնը գրուած էր Հրամանաւ Տրդատայ իբր դար մը յառաջ եւ կ'աւարտէր հաւանօրէն Խոսրովով (եւ Արտաւանով), այսինքն “առաջին թագաւորաց„ վերջինով։ Յաջորդ հատուածը (էջ 11, 4—12, 1, “յետ մահուանն Աղեքսանդրի — պայազատք նորին„) ամբողջապէս փոխառութիւն է Ասողկէն (էջ 29—32), որ հոս իր կարգին օգտուած է բացի ի Խո-

[1] Արքայացանկին մէջ երկու գրիչ նկատած է նաեւ Marquart, Beiträge zur Geschichte und Sage von Eran, ZDMG, 49, S. 652—653։

րենացիէն եւ Եւսեբիոսէն նաեւ Սեբիոսէն[1] (Հմմտ. Սեբ., էջ 7—9)։

Այսպէս Սեբիոս ներկայացնելով Պարթեւ եւ Հայ “առաջին թագաւորաց„ անուանացանկը՝ կատարած կ'ըլլար իր խոստումը՝ տալ արձանագրին պատճէնը թարգմանութեամբ։ Դժբախտաբար Սեբիոսի միակ ձեռագիրը զայն իր ամբողջութեան մէջ չէ հասցուցած մեզի։ Արձանագրին պատմական արժէքը նաեւ իր աղաւաղեալ ձեւին մէջ յայտնի է (Հմմտ. առ այս Մարկուարտի քննութիւնը յիշեալ տեղ)։ Շուտով առիթ պիտի ունենանք ծանօթանալու անոր, երբ մերձենանք Արքայացանկի քննութեան։

Սեբիոս այսուհետեւ կը շարունակէ ժամանակագրական աղիւսակներով պատկերել երեք դրացի պետութեանց՝ Հայոց, Հռովմայեցւոց եւ Պարսից արքայացանկը, սկսեալ Արտաշիր Սասանեանի գահակալութենէն, եւ կը հասցնէ մինչեւ 652։

*“Մարաբաս„, “Կեղծ-Ագաթանգեղոս„, “Կեղծ-Սեբէոս„, “Անանուն„, “Փ. Բիւզանդ„, “Ղ. Փարպեցի„ եւն:* — Մինչեւ այս տեղ ըստ կարելւոյն զգուշացանք շօշափել նախորդ քննիչներու տեսութիւնները նկատմամբ Նախերգանքի, որոնք կասկածանքով նայած են միշտ Նախերգանքին, ձգտելով միշտ անջատել զայն Սեբիոսի Պատմութենէն, իբրեւ անհարա-

---

[1] Հմմտ. Մալխասեանց՝ Սեբէոսի Պատմութիւնը, էջ 23—27։ Մալխասեանի տեսութիւնն, թէ Տարօնեցին տարբեր անձնաւորութիւն է Ասողիկէն, չեմ ընդունիր։

զատ եկամուտ մաս մը, գրուած ուրիշ հեղինակէ եւ պատահմամբ միայն միացած Սեբէոսի մատենին։ Ոմանք ընծայեցին զայն ըստ մասնէ Կեղծ-Ագաթանգեղոսի (Լանգլուա). ուրիշներ համարեցան Մովսէս Խորենացւոյ Պատմութեան առաջին խմբագրութիւնը (Գուտշմիդ) կամ վերագրեցին Մարաբայ Մծուրնացւոյ (Ֆէտտէր, Մարկուարտ), Անանունի (Մառ, Խալաթեանց), Կեղծ-Սեբէոսի (Մակլէր, Մատիկեան), եղան եւ այնպիսիներ, որոնք ուզեցին նկատել հոն Փ. Բիւզանդի (Ադոնց, Թոփճեան, Ալիշան-Տէր Սահակեան, Մատիկեան), Ղ. Փարպեցւոյ (Ալիշան, Տէր-Պօղոսեան)[1] գրիչը։ Այս այլազան տեսութեանց գրգիռ տուած էր Միհրդատեանց, որ մուծած էր ըստ կամի նախերգանքի մէջ Ա եւ Բ դպրութեանց զանազանութիւն եւ էջ 1, 20—10, 22, ուրեմն ամբողջ “Ա դպրութիւնը„ առած էր չակերտի մէջ իբրեւ մասն արձանագրութեան Ագաթանգեղոսի։ Ինչպէս այլ եւ այլ անգամներ կրկնեցինք, Միհրդատեանցի ո՛չ բաժանումը եւ ո՛չ չակերտները ծանօթ են ձեռագրաց։

Այս պէսպէս կարծեաց գեղեցիկ համադրութիւնը տուած է արդէն Հ. Մատիկեան (Կեղծ-Սեբէոս, էջ 1—9). աւելորդ կը տեսնեմ յառաջ բերել միւսանգամ եւ ձեռնարկել քննադատել։ Ուսումնասիրութեանս ըն-

---

1 Հանդ. Ամս. 1911, էջ 528 ծան. վերապահութեամբ՝ Վրթանէս Քերդողի գրչէն կ'ենթադրէի նախերգանքը. յետոյ կ'առնում ենթադրութիւնս։

թացքին շատ կէտերու մէջ տարբեր տեսակէտներ պաշտպանելով՝ ինքնին անկայուն եւ անհաստատ հողի վրայ կ'ընծայուին այս տեսութիւնները։ Նկատմամբ Նախերգանքի (Ա. եւ Բ. դպրութիւններու) հեղինակին կ'ընդգրկենք ամբողջութեամբ Ստ. Մալխասեանի եզրակացութիւնն, որ կը յանգի յայն թէ Ա. եւ Բ. դպրութիւնները «անտարակոյս Սեբէոսին են պատկանում, իբրեւ Նրա Պատմութեան անբաժան, համերաշխ եւ անհրաժեշտ մասերը[1]»․ առանց մերժելու նաեւ Հ. Գաթըրճեանի նկատողութիւնն, թէ Նախերգանքս «Սեբէոսի պատմական մասին չափ մտադրութեամբ շինուած չ'երեւար, այլ իբրեւ երկրորդական ու յարադրական բան մը, եւ կամ աւելի բացայայտ ըսելու համար՝ ասդիէն անդիէն նիւթերը ժողվուած, բայց դեռ ճիշդ կարգի չբերուած ծրագիր մը» (Եւրոպա 1851, թ. 21), թէեւ Հ. Գաթըրճեան քիչ մը խիստ արտայայտուած է՝ նկատի չառնելով էջերու ետեւառաջութիւնը, որ այնպէս խանգարած է բնագրին ընթացքը։

*Քննութիւններ Նախերգանքի վերաբերեալ։* — Ինչ ինչ գրութիւններ յիշեցինք վերը՝ առթիւ թարգմանութեանց եւ քննութեանց Սեբէոսի Պատմութեան․ ամբողջութեան համար յիշենք նաեւ հետեւեալները[2].

1 Սեբէոսի Պատմութիւնը, էջ Է։

2 Մարաբաս ասորւոյ նորագիւտ հատակոտորներու առթիւ լոյս տեսած քննութիւնները, որոնք Նախերգանքի հետ բնաւ աղերս չունին, աւելորդ կը համարիմ յիշատա-

A. v. Gutschmid, Über die Glaubwürdigkeit der armenischen Geschichte des Moses von Khoren, ի գիրս՝ Berichte über die Verhandlungen der K. S. Gesellschaft der Wissenschaften zu Leipzig, Phil.-hist. Klasse 23 (1876), S. 1—43 (= Kleine Schriften III [1892], S. 282—331).

A. Baumgartner, Über das Buch „Die Chrie“, ZDMG. 1886, S. 457—515, յառաջապէս էջ 466—467 ծան.։

P. Vetter, Das Buch des Mar Abas von Nisibis, ի գիրս՝ Festgruss Dr. Prof. Rud. v. Roth zum 50jährigen Doktorjubiläum, Stuttgart 1893, S. 81—88. Թարգմ. Հանդ. Ամս. 1894, էջ 1—5 = Հայկական աշխատասիրութիւնք հայագէտ Պ. Վեթթերի, Վիեննա 1895, էջ 31—45 “Մար-Աբաս Մծուրնացւոյ գիրքը„։

Н. Марръ, О начальной исторіи Арменіи Анонима. Къ вопросу объ источникахъ исторіи М. Хоренскаго. По поводу критических статей проф. A. Carriere'a. Ի թերթի Византійскій Временникъ, 1894, էջ 263—306 = Մ. Խորենացի ըստ ուսուցչապետ Ն. Մառի. Թարգմ. Ե. Լալայեանց. Հանդ. Ամս. 1895, էջ 18—20, 54—57, 108—110, 195—198, 297—300, 1898, էջ 313—316 (կիսով միայն)։

կեւ Հոս. Հմմտ. առ այս Յաշեան, Արշակունի դրամներ, Բ. էջ 224—225։

J. Marquart, Beiträge zur Geschichte und Sage von Eran. *ի թերթին* Zeitschrift der Deutschen Morgenländischen Gesellschaft, 49 (1895), S. 646—659. „Die Listen der eranischen und armenischen Arsaciden bei Mar Abas und Ps. Moses Xorenaçi“.

J. Marquart, Die angeblichen Zariadrismünzen und die Fürsten von Sophene bei Mar Abas und Ps. Moses Xorenaçi. *ի գիրս՝* Untersuchungen zur Geschichte von Eran. Göttingen 1896, S. 37—42 (= Philologus 54, S. 521—526).

Г. Халатьянцъ, Армянскій эпосъ въ исторіи Арменіи Моисея Хоренскаго. Москва 1896. *էջ* 58—150 *Մարաբաս Մծուրնացի կամ կեղծ Ագաթանգեղոս = Թարգմ. Լիպարիտ Նազարեանց՝ Վենետիկ* 1898, 8$^{0}$, *էջ* 110 (*արտատպուած Բազմավէպէն*)։

Н. Адонцъ, „Начальная исторія Арменіи“ у Себеоса въ ея отношеніяхъ къ трудамъ Моисея Хоренскаго и Фауста Византійскаго. По поводу брошюры С. Малхасянъ: *Սեբէոսի պատմութիւնը եւ Մ. Խորենացի. Տփղիս* 1899։ Виз. Временникъ, 1901 (*նաեւ առանձին*)։

H. Thopdschian. Die Anfänge des armenischen Mönchtums mit Quellenkritik. *ի* Z. f. Kirchengeschichte, 25 (1904), S. 3—14 (Faustus von Byzanz). *Դարձեալ նոյն՝* Politische und Kirchengeschichte Armeniens unter Ašot I. und Sembat I. Berlin 1905,

Տ. Յ. Հմմտ. եւ Արարատ, 1901, էջ 518—524. եւ 1903, էջ 529 եւն։

Հ. Ղ. Ալիշան, Հայապատում, Ա, էջ 143—147. Հմմտ. եւ էջ 23—28։

Հ. Ղ. Ալիշան, Հայաստան յառաջ քան զլինել Հայաստան. Վենետիկ 1904, էջ 285—288 Հ. Կ. Տէր-Սահակեանի ծանօթութիւնը։

Հ. Յ. Տաշեան՝ Արշակունի դրամներ, Բ. էջ 226—229 եւն։

Հ. Ա. Մատիկեան, Անանունը կամ կեղծ-Սեբէոս, քննական ուսումնասիրութիւն. Վիեննա 1913 (Արտատպ. Հանդ. Ամս. է, 1911–1912)։

Գր. Տէր-Պօղանեան, Նկատողութիւններ Փաւստոսի Պատմութեան վերաբերեալ. Վիեննա 1919 (Արտատպ. Հանդ. Ամս. է)։

Հ. Բ. Սարգիսեան. Սիմէոն Ապարանեցի եւ կեղծ-Սեբէոսի առեղծուածը. Բազմավէպ 1915, էջ 1—9, 33—39. Հմմտ. եւ նոյն՝ Ագաթանգեղոս եւ իւր բազմադարեան գաղտնիքը, էջ 277—279։

—

Արքայացանկին քննութիւնը, որ Նախնական ծրագրիս համաձայն պիտի յաջորդէր անմիջապէս Պատմութեան ուսումնասիրութեան. անակնկալ ճանապարհորդութեան մը պատճառաւ ստիպուած եմ թողուլ ուրիշ տեղւոյ եւ ժամանակի։

## Զ.

# ԵՐԳ ՏՌՓԱՆԱՑՆ ՏԻՐԻԹԱՅ

## ԱՆՏԵՍՈՒԱԾ ԵՂԵՐԵՐԳՈՒԹԻՒՆ ՄԸ

### Դ. ԴԱՐՈՒ ՀԱՅ ԱՆԳԻՐ

#### ԴՊՐՈՒԹԵՆԷՆ

*1. Մնացորդներ անգիր շրջանէն: — 2. Դ. դարէն անգիր զրոյցներ. "Երգք վիպասանաց,,: — 3. "Երգ տռփանացն Տիրիթայ,, պահուած Փաւստոսի քով. անոր բովանդակութիւնը, լեզուն չափական նկարագիրը: — 4. Բնագիրը:*

1. Երբ խօսք կ'ըլլայ անգիր շրջանի հայ գրականութեան վրայ, յառաջ կը բերուին միշտ այն հատակոտոր նշխարները, որոնք մնացած են անաղարտ՝ Մովսէս Խորենացւոյ Պատմութեան մէջ եւ որոնք ընդհանուր անուամբ "Գողթան երգեր,, կը կոչուին: Մկրտիչ Էմին քայլ մը աւելի յառաջ գնաց եւ անգիր գրականութեան մնացորդներու թուին մէջ առաւ նաեւ այն առասպելախառն զրոյցները, զորոնք Մ. Խորենացի իբրեւ մասն Հայոց նախնական պատմութեան հիւսած է իր Պատմութեան մէջ՝ երբեմն

իբրեւ քաղուածք Մար Աբասի մատենէն, եւ երբեմն իբրեւ ժողովրդական աւանդութիւններ։

Այսպիսի զրոյցներ կամ առասպելներ հին քաջազանց մասին, առանց կասկածի, ժողովրդական ստեղծագործութիւններ են, եւ ունին իրենց արժէքը գրական տեսակէտով։

2. Եթէ Մ. Խորենացի չէ կրցած նոյն կարգի զրոյցներ գրի առնուլ նաեւ Դ. եւ Ե. դարերէն, այն շրջանի համար բաւականանալով գրական աւանդութիւններով, բայց ասկէ չենք կրնար հետեւցնել թէ հայ ժողովուրդը իւր անգիր աւանդութեանց ծոցը չունէր նիւթեր այս դարերէն ալ։ Ինչպէս Արտաշէսի եւ Սաթենիկի հարսանեաց երգը կը ցուցնէ, երգերու շարքը դարէ դար կը ճոխանար նոր յաւելուածներով։ Ժողովուրդը կը շարունակէր ստեղծագործել։ Այս զրոյցներու եւ երգերու հիւսքը բանուեցաւ Գ. եւ Դ. դարերուն ալ, որոնց հետքը պէտք է փնտռել մեր հնագոյն պատմագիրներու՝ Փաւստոս Բիւզանդի եւ Ագաթանգեղոսի քով։ Հերոդոտ երկրէ երկիր շրջեցաւ ազգերու աւանդութիւններէն կազմելու հին պատմութեանց յիշատակարանը։ Նոյն ճանապարհը ընթացած պիտի ըլլայ նաեւ Փաւստոս[1], աւելի անձուկ սահմանի մէջ, յօրինելու համար իւր “յիշատակարանք յիշեցուցիչք պատմութեանց ազ-

---

1 Փաւստոս ըսելով կ'իմանամ այն հայ հեղինակը, որ յեցած “Փաւստեայ Բիւզանդեայ յոյն ժամանակագրի կանոնաց„ վրայ յօրինած է Դ. դարու Հայոց Պատմութիւնը՝ Ե. դարու առաջին կէսին։

գացն Հայաստան աշխարհին որդւոց Թորգոմայ» (Գ. Խոստաբանութիւն Նախագիտելի)։ Եւ Փաւստոսի մատեանը ճոխ է եւ առլցուն այսպիսի աւանդութիւններով. ես պիտի ուզէի անուանել զայն Դ. դարու հայ ժողովրդական աւանդութեանց Ցիշատակարանը, ուր ճարտար հեղինակը ամփոփած համբարած է ազատ խմբագրութեամբ այն, ինչ հայ ժողովուրդը գիտցած է աւանդել բերանացի Ե. դարու առաջին կէսին՝ նկատմամբ անցեալ ժամանակներու։

Իրօք ալ Փաւստոսի ծանօթ էին «երգք առասպելաց վիպասանութեան» (Գ. ժգ), զոր հայ ժողովուրդը կ'երգէր իր զուարթ ժամերուն՝ ժողովրդական հանդէսներուն, աշխարհաւանդ կացուրդներուն, եւ տխուր օրերուն՝ յուղարկաւորութեանց ժամանակ։ Վերջին պարագան առանձին կերպով շեշտուած է Փաւստոսի քով, որ պարսաւելով հայ ժողովրդեան հեթանոսական սովորութիւնները կը գրէ թէ «զմեռեալս լային փողովք եւ փանդռօք եւ վնօք զկոծսն պարուցն կաքաւելով» (Ե. լա)։ Ուրիշ աւելի ցայտուն օրինակ մը այս սովորութեանց կը հաղորդէ Փաւստոս, երբ նկարագրելով Գնելի մահուան առթիւ փառանձեմի սուգը՝ կը գրէ. «Եւ ձայնարկուքն ամենայն ի ձայն ողբոցն սկսան նուագել զիւրն տոփանացն Տիրիթայ, զակն գնելն, զքսութիւն, զհնարս մահու նուեթել, զսպանումն, ձայնիւք մրմնջոցն, ի վերայ սպանելոյն ի մէջ կոծոյն բարբառէին գեղգեղեալ խանդաղատութեամբ» (Դ. ժե)։

Ուրախութեան եւ սուգի այս երգերը, ինչպէս վերոյիշեալ տողերէն ալ կը տեսնուի, ոչ բովանդակազուրկ էին եւ ոչ կարճատեւ ժամանակի համար յօրինուած։ Ժողովուրդը անուանի հերոսի երգը ախորժով կը կրէր իւր շրթանց վրայ եւ սիրելի անձնաւորութեան կորուստը կ՚աւաղէր ընդերկար։

Երբ Փառանձեմ եղերամայրերու գլուխն անցած հիւսեց իւր ամուսնոյն տարապայման սպանման եղերերգը մանրապատում պարագաներով, անշուշտ այն շուտով արձագանգ գտաւ ժողովրդեան բերանը, որուն սիրելի էր գնելը։

Այլուր[1] մատնացոյց ըրած եմ հին զրոյցներու, վիպական հատուածներու նշմարներ Փաւստոսի Պատմութեան մէջ, որ Ե. դարուն կրցաւ այնքան թարմութեամբ գրի առնուլ զանոնք։ Եւ գրի առաւ ա՛յն ինչ լսեց, եւ լսեց ա՛յնպէս ինչպէս բերած հասցուցած էր ժողովուրդը հին դարերէն. զրոյցը իբրեւ զրոյց, վէպը իբրեւ վէպ եւ երգը իբրեւ երգ, իրենց նկարագրովը եւ յօրինուածքովը։ Ի հարկէ այսու չեմ ուզեր անպայման հաստատել թէ պատմագրին գրիչը կաշկանդուած մնաց ժողովրդական պատմուածքի հիւսկէն թելերով։ Պատմագիրը ազատ է նիւթի մշակման մէջ, նման պարտիզպանի, որ ազատ է տնկելու իւր բուրաստանին մէջ այն ինչ կ՚ա-

---

1 Նաւասարդ (Բուքարեստ) 1923, էջ 17—19 «Երգք առասպելաց վիպասանութեան Փ. Բիւզանդի Հայոց Պատմութեան մէջ»։

խորժի, ջրելու այնպէս ինչպէս կը հաճի, բայց երբ պատահի յանցս ճանապարհի գեղեցիկ ծաղկի մը կամ անուշահամ աղբիւրի, կը փափագի եւ ծաղիկը իւր արմատով եւ աղբիւրը իւր ակով փոխադրել իւր բուրաստանը. այսպէս եւ Փաւստոս մշակած է ազատ ոճով ժողովրդեան աւանդութիւնը իւր Պատմութեան համար. բայց երբ այդ աւանդութեան մէջ պատահած է շէնքով եւ շնորհքով գեղեցիկի, չէ դեգեւած ագուցանել զայն էական կազմովը իւր շինուածքին մէջ իբրեւ "աղիւս մի կարգած ի մէջ որմոյն շինուածոյ, ի կատարումն բովանդակութեան„ կամ գեղեցկութեան:

3. Այսպիսի հաղուադէպ գիւտի պատակած է Փաւստոս Տիրիթի տրփանաց երգին մէջ, ուր կը պատմուի Գնելի սպանման պատմութիւնը: Զարմանալի մանրամասնութեամբ, կենդանի գոյներով եւ զգայուն գրչով կը նկարագրէ Փաւստոս (Դ. ժե) այս եղերերգութիւնը, ուր զոհ կ'երթան հայ արշակունի տան երկու սեպուհներ, երկու հօրեղբօրորդիներ: Եղերերգութեան բովանդակութիւնն է հետեւեալը ամփոփ տողերու մէջ:

Գնել, Հայոց Արշակ Թագաւորի եղբօրորդին, կ'ամուսնանայ Սիւնեաց Անդովկ Նախարարի դստեր՝ գեղեցիկ Փառանձեմի հետ: Տիրիթ, Գնելի հօրեղբօրորդին, կը յափշտակուի Փառանձեմի գեղեցկութենէն եւ կը ձգտի տիրանալ անոր: Կը յաճախէ քսութիւններ Թագաւորի առջեւ Գնելի մասին, ցուցնելով

զայն թագին թեկնածու։ Արշակ հաւատալով քսութեանց կը վճռէ Գնելի կորուստը։ Առիթ առնելով Նաւասարդաց տօնը՝ միջնորդութեամբ Վարդան Մամիկոնեանի Գնել կը հրաւիրուի Շիրակաւան, ուր էր արքունի բանակը։ Փառանձեմի հետ կը փութայ Գնել մասնակցիլ արքունի ուրախութեանց, բայց հազիւ միջամուխ կ՚ըլլայ արքունի բանակին՝ կանխաւ նիւթուած դաւադրութեան համաձայն կը ձերբակալուի Գնել արքունական զինուորներէն. Փառանձեմ խելակորոյս՝ կը դիմէ Ներսէսի բարեխօսութեան. բայց ի զուր. թէեւ եպիսկոպոսապետը ընդհատելով առաւօտեան պաշտօնը կը փութայ արքունիք՝ նահանջել տալու թագաւորին՝ մահուան վճիռը, բայց չի յաջողիր կակղել Արշակի սալացեալ սիրտը. երբ կը ջանար դեռ համոզել թագաւորը՝ կը մտնէ դահճապետը արքունիք՝ ծանուցանելու թագաւորական հրամանին գործադրութիւնը։ Գնել սպանուած էր։ Թագաւորը սակայն իրաց արտաքին երեւոյթը փրկելու համար՝ մեծահանդէս յուղարկաւորութեամբ կը հրամայէ կատարել իր եղբօրորդւոյն թաղումը։ Հոն է Փառանձեմ, որ դառնաղի կ՚ողբայ իր ամուսնոյն անդարձ կորուստը։ Սպանելոյն դագաղին առջեւ կը յայտնուի աղէտաբեր սպանութեան պատճառը՝ Տիրիթի վատշուէր տարփանքը։

Բայց այժմ Արշակ ինքնին թեկնածու է չնաշխարհիկ Փառանձեմին։ Իբրեւ վրիժառու Գնելի մահուան՝ հրաման կը հանէ Արշակ մա-

հուամբ լուծել Նենգամիտ Տիրիթի վրէժը։ Այսպէս ապահոված Արշակ կ'առաջարկէ իւր ձեռքը Փառանձեմի, որ ակամայ կ'ընդունի։

Դէպքը տեղի ունեցած է հաւանօրէն 359ին, ուրեմն Փաւստոսի պատմութեան գրի առնուելէն իբր կէս դար եւ աւելի յառաջ։ Ժամանակի այս հեռաւորութիւնը եւ դիպուածին այն կենդանի նկարագրութիւնը, ուր գործող անձինք, ժամանակը, տեղն ու պարագաները այնպէս մանր նկարագրուած են իբր ականատեսի գրչով, չեն գտներ ուրիշ կերպով իրենց բացատրութիւնը, բայց եթէ այնու որ դէպքը օր օրին դրոշմուած է ժողովրդեան անգիր մատեններին մէջ՝ ձեւուած եւ չափուած այնպէս ինչպէս ըմբռնած է ժամանակը։

Եթէ նկատի առնունք վայրկեան մը թէ Գնել Առաւիւտոց գիւղը, Ծաղկոտն գաւառի մէջ, Շահապիվանի մօտ կը գտնուէր վերջին պահուն, իւր ընտանեաց եւ դռան հետ, եւ հետեւցնենք ասկէ թէ այնտեղ էր իւր մնայուն բնակավայրն ալ, կրնանք ենթադրել թէ երգն ալ այն տեղ աւելի ժողովրդականութիւն գտած էր եւ պահուած մինչեւ Ե. դարու առաջին քառորդը։ Եւ շատ բնական էր այս, քանի որ Գնելի անձը սիրելի էր առաւելապէս հոս՝ իւր բունին մէջ, եւ անոր յանկարծակի մեկնումն եւ յանկարծուստ կորուստը ամէնէն աւելի հոս յառաջ բերած պիտի ըլլայ յուզում եւ շփոթութիւն եւ հետաքրքրութիւն սպանման պարագաներուն մասին։ Հարկաւ եկած լուրերն ալ այն պիտի ըլ-

լային, ինչ որ կը շրջէր հրապարակի վրայ, որոշ մեկնութիւններով, յաւելուածներով, որոնց համեմատ գտաւ դէպքը անմիջապէս արձագանգ ժողովրդական “բանաստեղծներու„ բերանը։

Փաւստոսի գրիչը այստեղ աւելի ընդօրինակող մ'եղած է քան ստեղծագործող։ Ստեղծագործողը հայ ժողովուրդն է, որ իր գուսաններու կամ վիպասաններու բերնով վերածած է զայն երգի, եւ որդւոց որդի աւանդելով հասուցած է մինչեւ Ե. դարու առաջին քառորդը։

Թէեւ չենք կրնար այսօր կշռել եւ որոշել թէ Երգին մէջ ո՞րչափը պատմական է եւ ո՞րչափը կը պատկանի երեւակայութեան, բայց կրնանք ուրախ ըլլալ որ պահուած է հոն մեզի հայ ստեղծագործող մտքի մէկ ծնունդը, գեղեցիկ տեսլեամբ եւ չքնաղ յօրինուածով։ Բայց ափսո՜ս բազմաչարչար եւ վիրաւոր։

Պատմագիրը, որ զայն հիւրընկալած է Ե. դարուն իր առաւելապէս եկեղեցական Պատմութեան մէջ, գրուած արձակագիր, ստիպուած է պատշաճեցնել զայն ըստ կարելւոյն իր ոճին եւ ճաշակին։ Ստիպուած է արձակել Երգին կալուկապը, զսպուածքը՝ զայն կաշկանդող չափերէն, ստիպուած է անոր զուտ աշխարհիկ պատմուածքը համեմել կրօնական խրատաբանութեամբ, երբ անշուշտ նաեւ “հեթանոսամիտ„ ժողովրդեան համարձակախօս տողերէն յապաւուած է ինչ ինչ։ Որչափ ալ փափագելի ըլլայ մեզի այսօր լսել Դ. դարու հայ ժողովրդեան զգացող սրտի արտազեղումները իրենց

սկզբնական ամբողջութեան մէջ, բայց Ե. դարուն՝ հայ եկեղեցականի մը համար, որ պիտի մաքառէր հեթանոս սովորութեանց եւ մտածութեանց դէմ, աններելի էր բառ առ բառ արտագրել նման բանահիւսութիւն մը — տոփանաց երգ մը — իր բոլոր նրբութիւններով: Եւ արդէն Փաւստոս մեղադրուած է յաջորդներէն[1] իր գրչէն սպրդած քանի մը տողերու իսկ համար:

Այսու հանդերձ նրբաճաշակն Փաւստոս որ գիտցած է գնահատել ժողովրդական երգի մը յարգը՝ տալով անոր տեղ իր պատմութեան մէջ, հոգ տարած է մի եւ նոյն ժամանակ չաւրել հիմքն ի վեր ժողովրդական կերտուածքը. ջանացած է պահպանել անոր ներքին նկարագիրը անաղարտ, տեղ տեղ նաեւ արտաքին ձեւը, իր չափովը, հիւսուածքովն ու բառակերտովը, լսելի ընելով միշտ ժողովրդեան ձայնը, որ զայն կը գեղգեղէ խանդաղատանօք:

Այսպէս երգը թէեւ տուժած է իր սկըզբնական կերպարանքէն մեծ մաս մը, բայց պահպանած է նորէն նշմար մը իր թարմութենէն, եւ կարելի է դեռ տեսնել եւ զգալ տող ընդ մէջ սկզբնագրին շնորհքն ու արուեստը:

---

[1] Ղազար Փարպեցի նկատի առնելով Փաւստոսի այս եւ ասոր նման տեղիքները՝ վայրկեան մը կասկածելով անոնց Փաւստոսի գրչին վերաբերելուն՝ կը բացագանչէ. “Որդ յայնպիսում քաղաքի (Բիւզանդիոն) եւ ի մէջ այնչափ բազմութեանն ուսելոյ վարժեալ այրն Փաւստոս, այնպիսի ինչ արդեօք անհաճոյս լսողաց բանս կարգէր ի Պատմութեան իւրում. քաւ եւ մի լիցի„. էջ 4 (Տփղիս 1904):

Եւ պէտք չկայ շատ զգայուն ականջ կամ նուրբ ճաշակ զգալու համար հոս Երգին արուեստը։

Մինչդեռ հնագոյն երգերու մնացորդներուն մէջ կ'իշխէ ընդհանրապէս քանակականութիւնը քան չափականութիւնը, այստեղ կարծես վերջինս տիրող է, թէեւ ոչ բացարձակապէս։ Պիտի նկատենք որ չորրորդ՝ յառաջացեալ դարուն չենք կրնար փնտռել այն արուեստը նոյնութեամբ, որ նուաճած էր հին աշխարհը՝ Քրիստոսէ յառաջ եւ քիչ յետոյ, եւ ոչ այն չափականութիւնը, որ զարգացաւ Ե. դարէն յետոյ տակաւ առ տակաւ։ Անցման շրջան մըն էր, զոր կ'ապրէր հայ տաղաչափութիւնը Դ. դարուն։

Հին արուեստին ոյժն էր խօսքին հոսանքը քան վանկաչափը. խօսքը խօսք կը ծնանէր, տողը տող յառաջ կը մղէր, առանց երկար ոլորումներու, մոլորումներու։ Տողերը հատու էին, ամփոփ, մէկը միւսէն բղխող, հռետորական եւ երաժշտական շեշտերով. արտաքնով արձակ եւ անկաշկանդ, բայց հոսանքը ունէր ինքնուրոյն չափ եւ սարիք, նման ալիքի, որ մերթ վէտ վէտ կոհակներով եւ մերթ երկարաշունչ եւ խիզախ բախումներով կը ծեծէ ծովափը։

Ա՛յս արուեստը կ'իշխէ ընդհանրապէս Արտաշէսի երգին մէջ (Խոր. Բ, Ծ), որ յօրինուած է հաւանօրէն Ա. դարուն Յ. Ք.։

Հեծաւ արի արքայն Արտաշէս ի սեաւն գեղեցիկ
Եւ հանեալ զոսկէօղ շիկափոկ պարանն

Եւ անցեալ որպէս զարծուի սրաթեւ ընդ գետն
Եւ ձգեալ զօսկէօղ շիկափոկ պարանն
Ընկէց ի մէջք օրիորդին Ալանաց
Եւ շատ ցաւեցոյց զմէջք փափուկ օրիորդին։

Տիրիթի երգին մէջ աւելի զարգացած է արուեստը, քանակականութենէ չափականութեան դիմելով, կարծես մէտ վերջինէս ի սպառ նուաճուելու։ Ինչպէս վերագոյն շեշտեցինք քանիցս, շատ խիստ չենք կրնար գտնուիլ այս տեսակէտով Տիրիթի երգին քննութեան մէջ, քանի որ անիկա ենթարկուած է հզօր երկրաշարժի։ Սակայն եւ այնպէս կը գտնուին փլատակներու տակ ալ անաղարտ մնացած բեկորներ։ Օրինակի համար այսպիսիներէն համեմատութեան կ՚առնում երկտողս.

Եւ համբաւ գեղեցկութեան աղջկանն
ընդվայրուն տարածեցաւ,
Եւ համբաւ գեղոյ նորա
յաճախեալ բազմանայր եւ հնչէր։

Ամբողջ երգին մէջ զգալի է ընդհանրապէս 3—3—3 չափը, եւ կրնամ վերապահութեամբ ըսել թէ այս եղած է գլխաւորաբար իշխող չափը Դ. դարուն, որուն նմանութեամբ երգուած է ապա Հռիփսիմեանց մարտիրոսութիւնը սքանչելի “Անձինք նուիրեալք„ ի մէջ։ Այս չափը բոլորովին անծանօթ չէ նաեւ հնագոյն երգերու. այսպէս Արտաշէսի երգին երկրորդ եւ չորրորդ տողերն էին՝

Եւ հանեալ՝ զօսկէօղ՝ շիկափոկ՝ պարանն։

Ունինք մեր Երգին մէջ բազմաթիւ անաղարտ տողեր այս չափով. եւ ինչ որ աւելի հետաքրքրական է մեզի, այս չափին համաձայնուած է շատ տեղ նաեւ քերականութիւնը կամ շարադասութիւնը. այսպէս

Ապա Տիրիթն | ի հրնարս | նենգութեան | մրտանէր, |
եւ բազում | վարձէր իւր | օգնականս | եւ սատարս։

Եւ քանզի | կին նորա | եկեալ էր | ընդ նըմա |
ժանուարաւ,
ի նըմին | ի նորին | վաշտու էր | ընդ առն իւրում։

կամ լիցի | քեզ, արքայ | զի հրաման | ը տացես,
Զփառանձեմ | կին Գնելոյ | թող առից |
ինձ կնութեան |։...

Արդ գիտեմ | զոր լուայն | թէ ստոյգ է,
Վասն կնոջ | ըն իւրոյ | եղեւ մահն | Գընելոյ։

Այս եւ նման տողերը ըստ դիպաց չափականութիւն ստացած չեն, այլ խորհրդով չափուած եւ ձեւուած են, իբրեւ մասն չափական ստեղծագործութեան մը։

Բայց զինուորական այս քալուածքը շուտ շուտ ընդհատուած պիտի տեսնեն ընթերցողները. ոչ յաճախ անոր համար, որ բանաստեղծը կը յոգնի իւր ճանապարհին վրայ կամ քալուածքի փոփոխութեամբ միակերպ միաձայնութենէն խոյս տալ կ'ուզէ, այլ վասն զի Փաւստոս սանձարձակ ընթանալ կը նկրտի, իւր լայնատարած, աւելորդաբան ոճին յարմարցնել կ'ուզէ հօսանքը, պարզելով մեկնելով մութն ու խոր-

հրդականը, կտրուկն ու կարճառօտը։ Եթէ փորձենք այսպիսի յաւելուածները յապաւել, պիտի ունենանք բազմաթիւ հատուածներ վերոյիշեալ չափով։ Օրինակի համար «կամին զտէրութիւն նորա ի վերայ իւրեանց» կրնայ նկատուիլ ընդլայնում նախկին երգին հատու նախադասութեանս՝ «կամին զնորա տէրութիւն», որով գեղեցիկ կը համաձայնէր նախորդ եւ յաջորդ չափաւոր հատուածներուն. Նոյնպէս «ընդ առն իւրում» ժողովրդական ասութեամբ՝ «ընդ իւր առնն»։ Հնագոյն շրջանին աւելի գործածական էր անշուշտ արքայ քան թագաւոր (հմմտ. արի արքայն Արտաշէս եւն). այսպէս Երգիս մէջ տողս՝ «ազդ լինէր թագաւորին եկն նորա» կրնայ Փաւստոսի քմահաճոյքէն ըլլալ, փոխանակ հնոյն՝ «ազդ լինէր արքային եկն նորա»։

Նաեւ գրութեան հոգին, ներքին ոյժը՝ անկախ արտաքնէն, կ'արտայայտէ այնպիսի երեւակայութիւն, այնպիսի պատկերացում որ հեռու է ասպարիսով պատմագրին յատուկ ոճէն եւ յղացումէն։ Այն քանի մը էջերու մէջ ամբողջ կեանք մը խտացած է, ամբողջ աշխարհ մը պատկերացուած է։ Հայ արքունիքի դրանդինները ի հիմանց կը խախտուին, բաց են ներքնագոյն սենեակներն ալ, ուր յայտ յանդիման կը տեսնուին արքունի տուներու փոխ յարաբերութիւնները, չարակնութիւնները, քսութիւնները, ժահահոտ է արքունիքը արիւնհեղութեամբ, ապականութեամբ բարուց։ Միւս կողմանէ ընտանեկան կեանքի ներքին կարգերը,

տօնի եւ սուգի սովորութիւնները. կայթք եւ լացք ձեռն ի ձեռն կ'ընթանան: Այնտեղ կը տեսնենք Հայոց սեպուհին փառաշուք մուտքը արքունի բանակ, Թագաւորը իւր ննջասենեակին մէջ, հայ կանանց դասը ի լալիս: Ամենայն ինչ շարժուն պատկերի մէջ կենդանի, զգայուն, խօսող: Պատկերի միջնակէտն է Փառանձեմ, նա ընդհանուր ուշադրութիւն գրաւած է իւր շնորհքովը՝ “գեղեցկութեամբն եւ պարկեշտութեամբ„. միութիւնը իւր եւ Գնելի մէջ սերտ է եւ հիմնուած սեռն սիրոյ վրայ, ինչ որ կը փայլի ամբողջ պատերին մէջ. Տիրիթի խարդաւանանքը, Վարդանի հրապոյրը, Գնելի ժամանումը արքունի բանակ եւ կալանաւորումը, Փառանձեմի խելակորոյս դիմելը Ներսէսի, Արշակի աննահանջ յամառութիւնը, դահճապետին վերադարձը, Փառանձեմի սրտաճմլիկ գոչումը, եղերամայրերու ողբը, Արշակի մասնակցութիւնը սուգին, եւ վերջապէս Տիրիթի սպանութիւնը մէկ մէկ պատկերներ են, նկարագրուած ոչ պատմագրի փետուրով, այլ բանաստեղծի երեւակայոտ վրձինով: Պատկերին երանգ եւ շուք տուած են նաեւ օրուան ժամերը եւ բնութեան տեսարանները. Գնելի վարդագոյն արիւնը կը հոսէր “ի սարակ լերին„ երբ ծայրակարմիր արեգակը կը սկսէր երեւալ հորիզոնին վրայ “ի ծագել առաւօտուն„, այն պահուն երբ եկեղեցասէր ժողովուրդը խռնած Եկեղեցին ցայգապաշտօնով կը դիմաւորէր վարդագոյն արեամբ ներկուած Յովհ. Մկրտիչի յիշատակը: Որպիսի՜

պատկեր...: Տիրիթ փառանձեմին տիրանալու համար Գնելի սպանութիւնը թելադրեց. երբ կարծեց թէ տիրացած է՝ առիւծի թաթերուն մէջ գտաւ զայն, եւ իր մահուան դատակնիքը լսեց: Երգը կը հետապնդէ միաժամանակ կրկին բարոյական՝ ամուսնական հաւատարմութիւն — չարին չարով հատուցում: Բանաստեղծութեան ոճը մերթ ասպետական է, մերթ եղերերգական, մերթ քնարական, յաջորդաբար զիրար փոխանակող:

Ինքնուրոյն գլուխ մըն է երգս Փաւստոսի Պատմութեան մէջ նաեւ լեզուական տեսակէտով. թէ՛ քերականական համաձայնութեամբ եւ թէ՛ բառագիտութեամբ ինքնակաց է անիկա: Կը յաճախեն հոն այնպիսի քերականական ձեւեր, որոնք հազուադէպ են դասական մատենագրութեան, նոյն իսկ Փաւստոսի նախորդ եւ յաջորդ էջերուն մէջ. եւ անշուշտ Դ. դարու հայ անգիր դպրութենէն, որ ինքնոյս ժողովրդեան բերանը յօրինուած եւ պահպանուած է, չենք կրնար պահանջել խստօրէն ոչ այն քերականական կանոնաւորութիւնը, եւ ոչ բառերու ընտրութիւնը, որոնք կը փայլին Սահակայ եւ Մաշտոցի անընդմիջական հսկողութեան տակ գոյութիւն առած մատենագրութեան մէջ: Անկանոնութիւնը կնիքն է հնութեան: Կը յիշեմ քանի մ'օրինակ.

որ է կարի անուանեալ էր գեղեցկութեամբ եւ պարկեշտութեամբ (= որ կարի անուանեալ էր իւրով գեղեցկութեամբ եւն):

էր դուստր մի գեղեցիկ Անդովկայ ուրումն մի ի Նախարարացն Սիւնեաց = Անդովկայ ուրումն, որ էր մին ի Նախարարացն ...:

առ համբաւ ցանկալոյն անուանն = ցանկալի անուանն (անձին):

տրտմեալ լինէր մեծ հօրեղբօրորդին, Արշակ նեղեալ լինէր նենգութիւն:

յորժամ կարող տեսանելոյն = յորժամ կարաց հասանել տեսութեան.

զուր այժմ (ցայժմ) առէր զքեզ, որ ինմանէ մեծ սիրոյ արժանի էր:

շղարշ գեղմոյ երեսացն ծածկէր = ծածկէր զդէմս երեսաց իւրոց:

քնոյ պատճառ եղեալ (պատճառաւ?) = զքուն պատճառեալ:

ամենայն մարդիկն որ իցեն ի բանակին, մի ոք իշխեսցէ չերթալ, այլ ամենայն ոք առ հասարակ երթիցեն

ողջունել մեծ շահելոյ տափանացն:

մի կարէ զանձն քո աշխատ առնէր այդ չափ:

է կնոջն Գնելոյ շնորհեալ սիրով հարազատ Տիրիթն:

անուոյր բանին առ ժամանակ մի (ժամանակ մը լուռ մնաց այս նկատմամբ):

հրաման տայցես ... բող առէք:

## Դարձեալ քերականական ձեւերս՝

“Վաղիւն հասելոյ առաւօտուն օրն լուսանայր կերպարանէին. ի վերայ իրացն գործելոյ. զհետ լինէին խուզելոյն Տիրիթայ. շուրջ պատեցին զիւղակամբն, առաքեցին նիւթեաց. զոր էին սուրեալ արքային առէ„:

Թողովրդեան սիրելի է փաղաքշանօք անուանել իւր Հերոսը. այսպէս Գնել կոչուած է ստէպ “պատանեակ„, անգամ մը միայն “սեպուհ արշակունի„: Իսկ այս Երգին յատուկ է

առանձին բառարան մը այնպիսի բառերու, որոնք դասական շրջանին կամ անծանօթ են եւ կամ դուն ուրեք գործածուած. այսպէս.

ի մէջ Աշխարանին.
Բազմոցք
ի Գաղտագողօնս անկանիմ։
ի Գահոյսն (= ի մահիճս)
Գոռութիւն մահու
ի Դրացն ի ներքս
Եկն Նորա
Եկեղեցախօրան ժողովուրդ
Ժանուար
Խոլոլեալ
Կառափել
Չայնարկուք
Մերկատիտ,
Մրմնջոց ձայնք,
Միջամուխ լինել իմք,
Մուրտասատան
Նաւասարդաց ժամանակք․ տօնք,
Շաղախել զոք իմիք
Խնդանք
Ջայլէին,
Սալացեալ,
Սամոյրք (ծածկոց)
Սատար
Սարակ լերին
Սեպուհ
Վտաւառք
Տղեմ
Տափիմ
Տափանք[1]
Փոյրկնջան
Քսխս մատուցանել։

Եթէ փաստս ինքնաբերաբար իսկ ընտրած ըլլար գրութեան այս ոճը, ես պիտի ուզէի տեսնել դարձեալ ժողովրդական երգերու ազդեցութիւնը իր տողերուն վրայ։ Բայց այս ոճը բնական չէ փաստոսի, աննման իր Նախորդ եւ յաջորդ էջերուն, ուստի եւ կը մատնէ իր աղբիւրը, որ բացարձակապէս հայ ժողովրդեան բերնէն կը հոսէ, որ իւր սկիզբն ունի հայ անգիր գրականութեան մէջ. անիկա Տիրիթի տուփանաց երգն է։

1 Անգամ մը Ագաթ. ունի "տափող„. Հմմտ. առ այս Նորայր՝ Կորիւն վարդապետ, էջ 211–213։

«Երգ տուփանացն Տիրիթայ», կ'անուանեմ Գնելի սպանման եղերերգութիւնը հետեւելով Փաւստոսի այն տեղիքին, ուր կ'ըսուի թէ «սկսան նուագել զիրս տուփանացն Տիրիթայ»: Արդեամբք ալ սպանման մահառիթ պատճառն եղաւ Տիրիթի տառփանքը. եւ այս իսկ թելադրեց հայ գուսաններուն յօրինել այս նուագը կամ եղերերգը:

---

Ստորեւ յառաջ պիտի բերեմ Փաւստոսի Պատմութեան ամբողջ այս գլուխը, անփոփոխ, այն ձեւի մէջ, ինչպէս աւանդուած է, դուրս ձգելով միայն միջանկեալ յաւելուածները՝ Ներսիսի յանդիմանութիւնն եւ անէծքը, որոնք յայտնապէս կը պատկանին Փաւստոսի գրչին: Ինձմէ է միայն տնատումը կամ տողերու բաժանումը: Համեմատած եմ հատուածս մեր Մատենադարանի Թ. 767 (A) եւ 904 (B) ձեռագիրներու հետ:

---

## ԵՐԳ ՏՌՓԱՆԱՅՆ ՏԻՐԻԹԱՅ

*(Փ. Բիւզանդ Դ, ժե:)*

Զայնու ժամանակաւ՝ էր դուստր մի՝ գեղեցիկ
Անդովկայ՝ ուրումն մի[1]՝
ի Նախարարացն նահապետին Սիւնեաց,
որում անուն՝ փառանձեմ՝ կոչէր,
զորմէ կարի անուանեալ էր գեղեցկութեամբ
եւ պարկեշտութեամբ։
Ապա Գնել՝ պատանեակն՝ եղբօրորդին՝ արքային՝
էառ զնա՝ ի կնութիւն իւր։
Եւ համբաւ՝ գեղեցկութեան՝ աղջկանն
ընդ վայրսն՝ տարածեցաւ՝
Եւ համբաւ՝ գեղոյ նորա՝
յաճախեալ՝ բազմանայր՝ եւ հնչէր։
Ապա՝ առ համբաւ՝ ցանկութեան՝ անուանն[2]՝
տրփեալ լինէր՝ մեւս[3] եւս հօրեղբօրորդին՝
Գնելոյ՝ որում անուն՝ Տիրիթ կոչէր։
Վասն որոյ՝ անկանէր՝ ի գաղտագողոնս՝
մինչ զի՝ զնուն[4] իւր՝ տեսանել՝ կարասցէ։
Եւ յորժամ՝ կարացն՝ տեսլեանն՝ որում[5] ցանկայր՝
այնուհետեւ՝ հնարս խնդրէր՝ առն կնոջն՝

---

1 մին A։

2 Նորայր՝ Կորիւն 211 կը հարցնէ "նուա՞նն, նուոյն" որ ուղիղ չի թուիր. իմա "ցանկալի անուան = անձին"։ AB ձեռագիրներն ունին՝ "ցանկութեանն յանուանն"։

3 Տպ. մին եւս. Նորայրի Ձեռագիրը (Կորիւն, 211) միւս. A մինչ եւս։

4 մինչ զանուն A։

5 յորում A։

կորստեան։
ո գիտէ՝ զկին[1] Նորա՝ Նմա Հնար լիցի՝ յափշտակել։
Ապա Տիրիթն՝ ի Հնարս՝ Նենգութեան՝ մտանէր,
եւ բազում՝ վարձէր իւր՝ օգնականս՝
եւ սատարս՝
որով զիւր՝ չարախօսութիւնն՝
յառաջ վարել՝ կարասցէ։
Եւ քսիս՝ ստութեան՝ զգնելոյն՝ Նենգութեամբ՝
առ Թագաւորն՝ Արշակ՝ մատուցանէր,
թէ գնել Թագաւորել կամի եւ զքեզ սպանանել,
եւ՝ ամենայն՝ մեծամեծք՝ եւ Նախարարք՝
եւ ազատք՝ սիրեն՝ զգնել.
եւ՝ ամենայն՝ աշխարհիս՝ Նախարարք՝
կամին՝ զտէրութիւն Նորա ի վերայ իւրեանց՝
առնել՝ քան զքո.
արդ, ասեն, գիտեա եւ տես, արքայ,
զինչ գործեսցես. որպէս եւ կամիս,
զիարդ մարթասցիս ապրել։
Եւ այսպիսի բանիւք գրգռէին զԹագաւորն Արշակ, մինչեւ Հաստատէին ի միտս Թագաւորին զիւրեանց ասացեալսն։
Ապա՝ ոխացեալ՝ Թագաւորն՝ ընդ պատանեկին՝ գնելոյ,
եւ բազում անգամ Հալածական առնէր զնա.
եւ Նիւթեալ լինէր՝ Նենգութիւն՝ բազում ժամանակս։

---

1 տպ. զկնի։

Ապա՝ զնաւասարդաց ժամանակօքն՝
առնէր խորհուրդ՝ թագաւորն՝ Արշակ,
կոչել առ ինքն՝ զպատանեակն՝ Գնել՝
եւ սպանանել:
Ապա՝ առաքէր՝ զՎարդան՝ զեղբայր սպարապե-
տին, զնահապետ ազգին Մամիկոնեան տոհմին,
զի մեծաւ՝ երդմամբ՝ եւ նենգութեամբ՝
կոչել կարասցէ,
զի մի՛ խորհուրդն՝ յայտնեսցի՝
գուցէ փախիցէ՝ եւ ապրիցի[1],
այլ զի պատրանօք՝ եւ հրապարանօք
ածիցէ՝ մինչեւ ի տեղին՝ մահուն:
Եւ էր բանակ թագաւորին՝ ի Շահապիվանի,
ի բուն բանակետեղսն[2] Արշակունեացն,
ի ներքոյ Միւսեացն[3]՝ եւ ի վերայ Ասպարիսացն:
Եւ առաքեալ Վարդան՝ մեծ նահապետն[4]՝
յարքայէն Արշակայ,
եկն եգիտ՝ զպատանեակն՝ Գնել՝ ի մօտաւոր՝
տեղւոջն,
այս ինքն՝ ի գիւղն՝ Առաւիւտոց՝ անուանեալ:
Մեծաւ ուխտիւ՝ եւ բազում՝ պատրանօք՝
զպատանեակն՝ Գնել՝ հանդերձ իւրով կնաւն
եւ դրամբն՝ հաւանեցուցանէր՝
երթալ՝ հասանել՝ ի բանակն՝ արքունի,
իբրեւ այն թէ՝ ի մեծարանս ինչ զնա կոչիցէ՝
թագաւորն.

---

1 ապրեսցի A:
2 տպ. բանակի տեղւոյն:
3 Միւնեացն A:
4 տպ. զՎարդանն զմեծ:

*բազում խնդրանօք[1] տարեալ հասուցանէր,*
*եթէ՝ Թագաւորն՝ Արշակ՝ ոչ կամեցեալ՝*
*զտաւնս նաւասարդաց՝ առանց քո՝ անցու-*
*ցանել՝*
*զի հաճեալ՝ եւ քաղցրացեալ՝ է ընդ քեզ.*
*վասն զի՝ ըստ բանից՝ չարախօսացն՝*
*ոչինչ գտաւ՝ ի քեզ՝ չարութիւն,*
*եւ եհաս՝ ինքն ի վերայ՝ զի զուր այժմ՝*
*ատէր զքեզ,*
*որ ի նմանէ՝ մեծ սիրոյ՝ արժանի ես։*
*Ապա՝ չուեաց՝ ամենայն՝ կազմութեամբն՝ իւրով՝.*
*գնել,*
*երթեալ՝ հասանէր՝ ի բանակն՝ արքունի՝*
*զգիշերն՝ ամենայն՝ բազում փութով՝*
*տագնապաւ,*
*վասն զի վաղիւն՝ հասելոյ առաւաւտուն[2],*
*աւրն՝ լուսանայր՝ կիւրակէն։*
*Եւ յայնմ աւուր տաւն դիպեցաւ յիշատակի*
*մեծին Յովհաննու,*
*որ ի Գրիգորէ եւ ի Տրդատայ՝*
*յաւանին Բագաւանին կարգեալ էր...*
*եւ այնմ գիշերի՝ ցայգապաշտաւն մեծ եղեւ*
*ի բանակին առ կաթողիկոսին։*
*Իսկ իբրեւ՝ առաւաւտն՝ ծագեաց՝*
*հասանէր՝ վաշտն գնելոյն՝ ի բանակն՝ արքունի։*
*Եւ մինչ գնելն՝ արքունական՝ բանակին՝ լինէր՝*
*միջամուխ,*
*ազդ լինէր՝ Թագաւորին՝ եկն նորա։*

---

1 *խնդանօք*։
2 *ի վաղիւն* AB *առաւօտն* AB։

Ապա՝ ելանէր՝ հրաման՝ յարքունուստ՝
  արտաքս ունել՝ [զգնել]՝ եւ տանել՝ սպանանել։
Եւ մինչդեռ՝ գայր նա՝ ընդ բանակամէջն,
  եւ էր հեծեալ յերիվարին իւրում,
Իբրեւ մերձ եղեւ ի հրապարակն արքունի,
  եւ անդ՝ ի[1] յարքունուստ՝ հասանէին՝
  բազում սպասաւորք՝ վառեալք՝
  սուսերաւորք՝ նիզակաւորք՝ վազրաւորք[2],
  սակրաւորք՝ սունաւորք՝ եւ սպարակիրք՝
  հետեւակք,
  որք՝ մատուցեալք՝ բուռն հարեալք՝
  ընկենուին յերիվարէ անտի
  զպատանեակն գնել,
  եւ ձեռս յետս[3] կապէին զնա,
  եւ առեալ գնային ի տեղի կառափնլոյն։
Եւ քանզի՝ կին նորա՝ եկեալ էր՝ ընդ նմա՝
  ժանուարաւ[4],
  ի նմին՝ ի նորին՝ վաշտու էր՝ ընդ առն իւրում։
Իսկ իբրեւ՝ տեսանէր՝ թէ կալան՝ զայրն իւր՝
  եւ կապեցին, վաղվաղակի՝ ընթացաւ՝
  յեկեղեցախորանն՝ ժողովուրդն՝
  ուր պաշտաւն՝ մարդկան՝ բանակին
  առ Աստուած՝ կատարէր,
  մինչդեռ՝ առաւաւտին աղաւթքն մատչէին,
  եւ անդ Ներսէս մեծ եպիսկոպոսապետն։

---

1 Նորայր կ'առաջարկէ՝ եւ անդր (էջ 211)։

2 այսպէս B. տպ. վաղրաւորք. Հմմտ. առ այս Վարդանեան, Բառաքննական դիտողութիւններ. Դ։

3 ի յետս A։

4 տպ. ժանուաւ։

Իսկ կինն հասեալ առ արքեպիսկոպոսապետն
գոյժ արկանէր նմա
զիւրոյ առնն՝ տարապարտ՝ կորուստն.
ճչեալ մեծաձայն՝ վաղ հասիր, ասէ, դու[1],
զամուսինն իմ՝ զուր առանց՝ վնասու՝
եւ յանցանաց՝ խողխողեն։
Իսկ նորա՝ խափանեալ՝ զպաշտաւնն,
ընթանայր՝ ի խորանն՝ արքունի՝
հասեալ ի դրացն ի ներքս՝ առ թագաւորն՝
անկանէր։
Իսկ թագաւորն իբրեւ տեսանէր զմեծ քահա-
նայապետն, գիտացեալ զբարեխաւսութիւն
համոզելոյն[2], վասն առնն մահուանն՝ զի մի
մեռցի։
Յայնժամ՝ թագաւորն՝ զիւր սամոյրսն՝ զգլխոյն՝
ածեալ՝ ի փոյրկնջանն[3]՝ մտեալ՝
զիւր դէմն՝ երեսացն՝ ծածկէր
քնոյ պատճառ եղեալ՝ զի զնորա բանսն
մի լուիցէ։
Իսկ սուրբ Ներսէս մատուցեալ բուռն հարկա-
նէր զթագաւորէն. խօսէր ընդ նմա եւ ասէր.
թագաւոր՝ յուշ լիցի՝ քեզ քո տէրն, ...
խնայեա՝ յանձն քո՝ մի հեղուլ՝ զարիւն՝
եղբօր քո՝ հարազատի,
սպանանել՝ զարդարն՝ ի տարապարտուց՝

---

1 տպ. դեռ։

2 Տպ. համոզելոյն։

3 Տպ. ի փոյթ կնջանն, Հմմտ. առ այս Նորայր՝ Կորիւն վարդապետ, էջ 342, ուր կը համեմատէ սանսկրիտ paryanka բառին հետ "մահիճ" իմաստով։

յանխնայ։
Իսկ Թագաւորն՝ սալացեալ՝ ոչ(ինչ) լսէր
զերեսան՝ վտաւատաւքն՝ ծածկեալ՝
ոչ բանայր,
եւ ոչ կամէր առնել բանիցն պատասխանի,
այլ՝ ընկողմնեալ՝ պատեալ՝ ծածկեալ կայր՝
ի գահոյսն,
զի եւ շարժել անգամ՝ ոչ տղէր։
Իսկ մինչդեռ նա (Ներսէս) զայս եւ զայսպիսի[1]
բանս ողոքով ընդ Թագաւորին խօսէր,
գայր՝ արտաքուստ՝ դահճապետն՝ Երազմակ,
մտանէր՝ ի խորանն՝ արքունի, սկսանէր պատմել
զի ի գլուխ հանի՝ կատարեցի՝,
զամենայն, ասէ, զհրամանս՝ արքունի.
առի՝ գնացի՝ զԳնել, տարայ՝
մինչեւ յորմ՝ Սիւսին[2],
սպանի՝ եւ անդէն՝ թաղեցի։
Ապա խօսել սկսանէր սուրբն Ներսէս...
Իսկ զպատանեակն՝ Գնել՝
առնուին՝ գնային՝ մաւտ ի Սիւսն[3]՝ արքունի,
եւ անդէն կառափէին, ի սարակ լերինն,
որում տեղւոյն Լսին անուանեալ է,
մաւտ յորմածս արգելոցացն որսոյն էրբէոցն,
ընդդէմ մուրտաստանին,
աղբերացն՝ բազմոցացն՝ արքունի,
յանդիման բանակետեղ բնին։
Ապա հրաման եղեւ յարքայէն

---

1 Տպ․ այսպիսի . . . ողոքով, հմմտ․ Նորայր։ էջ 202։
2 Նիւսի A։
3 Սիւնան A։

ամենայն մարդիկն որ իցեն ի բանակին,
մեծ եւ փոքր առ հասարակ
մի ոք իշխեսցէ չերթալ,
այլ ամենայն ոք առ հասարակ երթիցեն,
դիցեն աշխար կոծոց[1],
եւ լացցեն՝ զգնել զմեծ սեպուհն[2]՝ արշակունի՝
զսպանեալն։
Իսկ ինքն՝ թագաւորն՝ գնացեալ՝ ի լալիսն
նստեալ լայր՝ զեղբաւրորդին իւր՝,
զոր ինքն եսպան,
երթեալ՝ նստէր[3]՝ մաւտ առ դին՝ լայր ինքն,
եւ տայր հրաման կոծ մեծ եւ աշխար դնել
շուրջ զսպանելով՝ դիակամբն։
Իսկ կինն՝ սպանելոյն՝ Փառանձեմ
զհանդերձն՝ պատառեալ՝ զգէսս արձակեալ,
մերկատիտ՝ ի մէջ աշխարանին՝ կոծէր.
ձայն արկանելով ճչէր,
յողբս արտասուաց յաղիողորմ գուժի
առ հասարակ զամենեսեան լացուցանէր։
Իսկ թագաւորն Արշակ[4] ի լալիսն
տեսանէր զկինն սպանելոյն,
տռփէր եւ ակն դնէր՝
առնուլ զնա իւր կնութեան։
Իսկ այն՝ որ ընենգութիւն՝ քսութեանց[5]
նիւթեաց,

---

1 աշխարհակոծ A։
2 լացցեն զմեծ սեպուհն A։
3 նստեալ A։
4 "Արշակ․․ ն—նէ A։
5 քսութեանցն A։

*եւ դաւով՝ ի վերայ՝ իւրոյ հարազատին՝*
*սպանութիւնս՝ կատարեաց,*
*վասն Նորին կնոջն՝ արար զայն,*
*զի մեծապէս սիրով՝ հարեալ էր՝ ի Նմա․*
*զՏիրիթն ասեմ՝ որ յառաջագոյն հարեալ էր*[1]
*ի կնոջն յայնմիկ,*
*վասն որոյ՝ զնենգութիւն*[2]*՝ սպանութեանցն՝*
*թագաւորաւն՝ գործեաց։*
*Իսկ մինչդեռ՝ ի Նմին՝ կոծն սաստկացեալ էր,*
*Տիրիթն՝ սկսանէր՝ ժոյժ չունելոյ՝ տռփանացն*[3]*․*
*պատգամ յղէր*[4] *առ կին մեռելոյն, ասէ, զի*
*"Մի՛ կարի՛ զանձն քո՝*
*աշխատ առներ՝ այդչափ,*
*զի այր բարի ես եմ քան զնա*
*ես սիրեցի զքեզ՝ վասն այսորիկ՝ մատնեցի՝*
*զնա ի մահ,*
*զի զքեզ՝ առից ինձ՝ կնութեան„։*
*Արդ մինչ դեռ կոծ մոլութեան*[5]*՝*
*զդիակամբն՝ ջայլէին,*
*զայսպիսի՝ պատգամս*[6]*՝ առաքէր՝ Տիրիթն։*
*Բողոք բառնայր (փառանձեմ) թէ*
*"Լուարուք՝ ամենեքեան՝ զի մահ*[7]*՝ առն իմոյ՝*
*վասն իմ եղեւ,*
*զի որ ինձ՝ ակն եդ՝ վասն իմ՝ զայրն իմ՝*

---

1 *էր չունի տպ․ այսպէս* A։
2 *Տպ․ զնենգութիւնս․ այսպէս* A։
3 *տռփանացն* AB։
4 *Նորայր, էջ* 191։
5 *մոլորութեանն* A։
6 *պատարագս* A։
7 *մահն* A։

ետ սպանանել»․
զհերն[1] փետէր ճչէր ընդ կոծելն։
Ապա իբրեւ՝ մեծ իրքն՝ համարձակ՝ յայտնեցան,
ի լսելիս ամենեցուն եւ ի ձայնարկուսն[2]
ամենայն, եղեւ նա՝ մայր ողբոցն։
Եւ ձայնարկուքն[3]՝ ամենայն՝ ի ձայն ողբոցն
սկսան՝ նուագել՝ զիւրսն՝ տրփանացն՝ Տիրիթայ,
զակն դնելն՝ զքսութիւնն՝ զհնարս մահու
նիւթել՝ զսպանումն,
ձայնիւքն մրմնջոցն՝ ի վերայ սպանելոյն՝
ի մէջ կոծոյն բարբառէին,
գեղգեղեալ խանդաղատութեամբ։
Ի նուաճել իւրեանց ձայնիցն՝
իրքն յայտնեալ հուչակ հարկանէր։
Զոր իբրեւ լուաւ[4] թագաւորն Արշակ,
եւ եհաս ի վերայ իրացն,
զարմացեալ լինէր, արմանայր ընդարմանայր,
ստրջացեալ ի միտ առնոյր զիւրսն։
Ապա խօսել սկսանէր թագաւորն,
ծափս զծափի հարեալ՝ մեծաւ զղջմամբ
ընդ իւրսն զոր գործեաց, ասէ.
«Վասն զի՝ ի կնոջն՝ գնելոյ՝
զանարժան՝ սիրով հարաւ[5]՝ Տիրիթն,
առ այնմ՝ զչարիսն՝ նիւթեաց՝
զքսութիւն՝ զմահուն՝ գոռութիւն[6]՝

---

1 Տպ. զհեր։
2 Տպ. ձայնարկունքն ՁՁ. ձայնարկուքն։
3 Տպ. ձայնարկունքն, այսպէս ՁՁ։
4 լուեալ A։
5 հարեալ A։
6 գռգռութիւն A։

զուր եւ՝ տարապարտ,
եւ զմեզ եւս՝ արդար[1] արեանն՝ շաղախեաց,
վասն իւրոյ պղծութեանն՝ զեղբայրն իւր՝
ետ կորուսանել,
եւ զանհնարին՝ չարիսն՝ եւ զանէծս՝
որ ոչ անցանեն՝
ետ մեզ՝ ժառանգել:
Ապա իբրեւ՝ հասանէր՝ Թագաւորն՝
յիրացն հաստատութեան ի վերայ՝
եւ ճշգրտէր զիրսն,
խլխլեալ անսայր բանին առ ժամանակ մի:
Իսկ իբրեւ՝ զմեռեալն՝ ծածկեցին,
անդէն՝ ի տեղւոջն՝ յորում՝ սպանաւն,
եւ աւուրք՝ հարուստ՝ անցին՝
ի վերայ իրացն՝ գործելոց,
պատգամ յղէր Տիրիթն առ Թագաւորն,
«կամ լիցի՝ քեզ, ասէ[2], արքայ,
զի հրաման տացես,
զփառանձեմ՝ կին գնելոյ՝ Թող առից՝
ինձ կնութեան»:
Զոր իբրեւ լուեալ արքային՝ ասէ,
«Արդ հաստատ[3] գիտեմ՝ զոր լուայն՝
թէ ստոյգ է,
վասն կնոջն՝ իւրոյ՝ եղեւ մահն՝ գնելոյ»:
Եւ անդէն՝ արքայն՝ մահ խորհէր,
սպանանել՝ զՏիրիթ եւս՝
փոխանակ՝ ընդ մահուն՝ գնելոյ:

---

1 յարդար A:
2 Տպ. քեզ ասէ:
3 հաւաստեաւ A:

Զոր իբրեւ լուաւ Տիրիթ, զահի հարեալ
յարքայէն գիշերի փախստական լինէր։
Ապա՝ ազդ լինէր՝ թագաւորին՝ Արշակայ,
փախուստն՝ Տիրիթայ.
տայր հրաման՝ թագաւորն՝ Արշակ,
ազատագունդ՝ բանակին՝ զհետ լինել՝
Տիրիթայն.
զի իբրեւ՝ հասցեն նմա՝
անդէն՝ ի տեղւոջն՝ սպանցեն։
Բազումք եւ քաջք՝ զհետ լինէին՝ փախուցելոյն[1]՝
Տիրիթայ.
ապա երթեալ հասանէին ի գաւառին Բա-
սենոյ, ի մէջ մայրեացն,
ի տեղւոջն՝ յորում հասանէին,
անդէն զՏիրիթն սպանանէին։

Եւ յետ այսորիկ էառ իւր Արշակ զկինն սպանելոյն[2] զՓառանձեմ։ Եւ որչափ սիրէր արքայն Արշակ զկինն, նոյնչափ ատեաց կինն զարքայն Արշակ[3], ասելով թէ
Թաւ է մարմնով եւ թուխ է գունով։

—

Կը խոստովանիմ թէ այս տնատումը շատ տեղ բռնազբօսիկ է եւ արուեստական։ Երգին այժմեան վիճակը թոյլ չի տար առանց մեղանչելու աւանդութեան դէմ, լաւագոյն կերպա-

1 փախուցելոյն չ—նի A։
2 զԳնելոյն AB։
3 Արշակ չ—նի A։

նանաց տակ ընծայել զայն։ Եթէ յաջողի բանասիրութեան վերականգնել Փաւստոսի շատ տեղ վնասուած բնագիրը համեմատութեամբ ընտրելագոյն ձեռագիրներու, կը յուսամ թէ պիտի ստացուի նաեւ այս հատուածիս մէջ հին Երգէն աւելի անաղարտ տողեր, չափով եւ շեշտով աւելի համապատասխան նախնականին։

Մինչ այդ՝ այս եւս բաւական է ճաշակ մը ստանալու համար հին Հայոց վիպասաններու Երգերէն։

---

## Է.

# ՓԱՒՍՏՈՍ ԲԻՒԶԱՆԴԻ ԱՂԲԻՒՐՆԵՐԷՆ

### ՍՔԱՆՉԵԼԻՔ ԶՈՐ ԵՑՈՅՑ ԱՍՏՈՒԱԾ Ի ՁԵՌՆ ՍՐԲՈՑՆ ԵՐԱՍԻՄՈՍԻ

---

## Է.

# ՓԱՒՍՏՈՍ ԲԻՒԶԱՆԴԻ ԱՂԲԻՒՐՆԵՐԻՆ

### ՍՔԱՆՉԵԼԻՔ ԶՈՐ ԵՑՈՅՑ ԱՍՏՈՒԱԾ Ի ՁԵՌՆ ՍՐԲՈՅՆ ԵՐԱՍԻՄՈՍԻ

Արդէն Հ. Յովսէփ Գաթըրճեան մատնացոյց ըրած էր, թէ Փաւստոս իր Պատմութեան մէջ օգտուած է Հարանց Վարքերէն. “Ներսէսի սարկաւագապետին խադայ Հրաշից նկատմամբ կ'օրինակուի ինչ ինչ անապատաւոր հարց պատմութեանց մէջէն։ Ուրիշ վանական պատմութեանց կամ Հարանց վարուց մէջ կարդացածն ի Հայաստան Մամբրէ միայնանոցը կը բերէ անշուշտ„[1]։ Թէեւ մասնաւոր ակնարկութիւն մը որոշ կէտի մը մասին չենք գտներ Հ. Գաթըրճեանի գրութեանց մէջ, բայց անոր սուր դատողութիւնը կ'արդարացնէ Ս. Երասիմոսի Սքանչելիքը, որ պահուած է մեր 705 Ոսկեփորիկի մէջ, Հարանց Վարուց պատմութիւններու շարքին մէջ։

Ձեռագիրս, Նոր ստացուած Կ. Պոլսէն, գրուած է 1403ին, Ընձեւացեաց վանքին մէջ

---

[1] Սրբազան Պատարագամատոյցք, Վիեննա 1897, էջ 94։

եւ կը պարունակէ հարուստ մաս մը Հարանց Վարուց հնագոյն խմբագրութենէն։ Կան հոն հատուածներ, որոնք անծանօթ մնացած են Հարանց Վարուց Վենետիկի 1855ի հրատարակութեան։

«Սքանչելիք զոր եցոյց Աստուած ի ձեռն սրբոյն Երասիմոսի» այն մասերէն է, որոնք չեն առնուած յիշեալ հրատարակութեան մէջ։ Բայց անիկա կը վերաբերի Հարանց Վարուց, եւ թարգմանութիւնը շատ հին կ'երեւայ, թերեւս նոյն իսկ Ե. դարէն, թէեւ ցոյց տայ տեղիս տեղիս լեզուական խանգարումներ։ Նոյն Սքանչելիքը ունինք նաեւ մեր Թ. 213, թղ. 297ա Ցայսմաւուրքի մէջ, ենթարկուած նոր խմբագրութեան, լեզուի եւ շարադասութեան հզօր փոփոխութիւններով, այնպէս որ համեմատութեան առնուլ անկարելի է։

Այս Սքանչելիքը, եթէ ոչ ուղղակի Թ. 705ի ընծայած խմբագրութեամբ, բայց գոնէ անոր մէկ հնագոյն ձեւովը ծանօթ եղած է Փաւստոսի ի վարս Ս. Ղաղիտայի։ Ինչ որ կը պատմուի հոս Ս. Երասիմոսի մասին, նոյնը նմանողութեամբ մերձեցուած է Ղաղիտայի, այսպէս ցամաք ոտքով գետերէն անցնիլը, առիւծի թաթին բուժումը։ Ուշադրութեան արժանի է որ Փաւստոս (Ե. իե) նշանակելով Ս. Ղաղիտայի անապատը «յԱռիւծ լերինն», թերեւս ասկէ մղուած հնարած է Սրբոյն բնակակցութիւնը առիւծներու հետ։

Կը գրէ Փաւստոս (Ե. իզ).

"Շաղիտայս, այր սուրբ, էր լեալ աշակերտ մեծին Դանիէլի. եւ ի տղայութենէ իւրմէ սնեալ էր համակ յանապատս եւ ընդ անապատաւորս խոտաճարակ լեալ էր: Եւ յետ հանգստեան սրբոյն Ներսէսի գնաց շրջաւ ի գաւառն Կորդուաց, եւ առնէր նշանս եւ սքանչելիս. եւ բնակէր ի մէջ առիծուց. աւելի քան զքսան առիւծ հանապազ շրջէին ընդ նմա հանապազաւրդեալք:

Եւ զի լինէր զի յորժամ ցաւ ինչ ցաւէր գազանացն, գային շուրջ պատէին զնովաւ, եւ ձգձգէին զՇաղիտայն, եւ նշանաւ առնէին խընդրել զբժշկութիւն: Եւ էր երբեմն՝ զի առեւծ մի մեծ, եւ էր ելեալ եղէգն ընդ թաթուլ բազկին առիւծոյն. եւ եկն առեւծն առ սուրբն Շաղիտայն ի լեառնն՝ յորում նստէր. եւ զաւրէն մարդոյ ի վեր առեալ զթաթուլն՝ ցուցանէր նմա զվէրն, նշանացէր նմա բժշկել զինքն: Իսկ սուրբն Շաղիտա հանէր զեղէգն՝ որ ընդ վէրն մտեալ էր, եւ թքանէր ի վէրն, եւ թաշկինակաւն՝ զոր ընդ գլուխն իւր էր ածեալ՝ հանեալ պատէր զթաթ առիւծուն եւ բժշկէր:

Եւ այսպէս բիւրապատիկ եւ պէսպէս առնէր զսքանչելիս: Եւ գազանք էին կենաց կցորդ նորա, մինչ շրջէր նա յանապատս զամենայն աւուրս կենաց իւրոց:

Եւ ի գետ իբրեւ հասանէր, կաւշկաւքն անցանէր ի վերայ ջուրցն գետոցն, եւ ոչ թանային կաւշիկքն նորա . . .":

Կայ ասորական գրականութեան մէջ Ս.

*Շաղիտա մը, որ գործած է Դ. դարուն ի Բեթ կարդու (վարքը* Bedjan, Acta martyr. et Sanctor. I, 424 - 465), *եւ անշուշտ այս առաքեալն է կորդուաց, զոր Փաւստոս Դանիէլի աշակերտն ըրած է։ Այս մասին կ'անդրադառնանք մենք ուրիշ առթիւ։*

*Այս տեղ կը հրատարակեմ Սքանչելիքս իւր ամբողջութեան մէջ համաձայն մեր Թ.* 705, *Թղ.* 355*ա*—356*ա Ոսկեփորիկին, թողլով համեմատութիւնը ընթերցողներուս։*

---

## ՍՔԱՆՉԵԼԻՔ ՋՈՐ ԵՑՈՅՑ ԱՍՏՈՒԱԾ Ի ՁԵՌՆ ՍՐԲՈՅՆ ԵՐԱՍԻՄՈՍԻ

*Սուրբս այս Երասիմոս բնակեալ էր յանապատն որ էր մերձ ի Յորդանան։*

*Արդ այսպէս ընկալաք ի հարց սրբոց որ էին մերձ առ երանելին, եւ պատմեցին մեզ վասն սրբոյ ծերոյն, զի երթայր ի վերայ Յորդանանու որպէս ի ցամաքի։ Դէպ եղեւ յաւուր միում երթալ ծերոյն մերձ յեզրն Յորդանանու. եւ հանդիպեալ նմա*[1] *առեւծ մի մռնչելով եւ արտասուելով. եւ ունէր ի ձեռին իւրում խոցուած եղեգան. իբրեւ ետես զծերն, անկեալ երթայր զհետ նորա. կալեալ զվէրս ձեռաց իւրոց առաջի ծերոյն՝ խնդրէր ի նմանէ զբժշկութիւն որպէս բանաւոր։ Իբրեւ ետես ծերն զառիւծն ի նեղու-*

[1] *Ձեռ. նմայ։*

թեան՝ կալեալ զձեռանէ Նորա եՀան զեղէգն Հարեալ ի Նմա՝ յոյժ զգուշութեամբ. եւ մաքրեալ զվէրն[1] առողջացոյց եւ արձակեաց խաղաղութեամբ։ Իբրեւ ողջացաւ առիւծն՝ ոչ մեկնէր ի ծերոյն, այլ շրջէր զՀետ Նորա։ Եւ տեսեալ զիմաստութիւն գազանին փառաւորեաց զԱստուած։ Եւ յայնմ Հետէ կերակրէր զնա Հացիւ եւ այլ զոր ինչ եւ Հանդիպէր տալ Նմա։ Եւ էր էշ մի որ բերէր ջուր յանապատն, վասն զի ոչ գոյր մերձ յանապատն, բայց միայն ի Յորդանանէ։ Եւ էր Հեռաւոր անապատն ի Յորդանանէ իբրեւ մղոնաւ միոյ։ Իսկ երանելի ծերոյն կացուցեալ զառիւծն ի սպասաւորութիւն իշոյն[2], զի արածէր եւ բերէր զջուր վանացն։ Եւ եղեւ յաւուր միում զի արածէր զնա, ննջեալ առիւծուն՝ Հեռացաւ ի Նմանէ էշն. եւ Հանդիպեալ ճանապարՀորդաց որ երթային ի Հնդիկս, Հանդերձ ուղտաւք։ Եւ Նոցա տեսեալ զէշն առին եւ տարան ընդ ինքեանս։ Իբրեւ զարթեաւ առիւծն, ոչ ետես զէշն. յարուցեալ ընթանայր յայս կոյս, յայն կոյս. եւ իբրեւ ոչ եգիտ, գայ յանապատն, թերեւս անդ իցէ, եւ ոչ եգիտ։ Եւ տեսեալ ծերոյն զառիւծն կարծեաց թէ կերեալ իցէ. եւ ասէ ցնա. Ո՞ւր է էշն։ Եւ նա լռեալ Հայէր ընդ գետինն իբրեւ զմարդ։ Ասէ ցնա ծերն. կերա՞ր զէշն. կենդանի է Տէր, զգործն զոր գործէր էշն, զնոյն պարտ է եւ քեզ

1 Թ. 213 ունի Հոս. «Եւ մաքրեալ զվէրսն եթուք ի Նմա եւ ողջացոյց. եւ առիւծն այլ ոչ մեկնեցաւ ի ծերոյն»։

2 Ձեռ. իշուն։

գործել: Եւ Նա հնազանդեալ աստուածային հրամանաւ[1]՝ բերէր զջուրն ի Յորդանանէ ի յանապատն:

Եւ եղեւ յետ ժամանակի գալ յանապատն իշխանի միոյ յերկրպագութիւն սուրբ ուխտին եւ խնդրել աղաւթս ի ծերոյն: Եւ տեսեալ զառեւծն զի բերէր ջուր վանիցն, ի հիացման եղեալ հարցանէր ի Նոցանէ թէ զինչ իցէ այն: Եւ ծանուցանեն Նմա զորպիսութիւնն: Եւ Նորա ողորմեալ առեւծուն, հանեալ երիս դահեկանս ետ ի գինս իշոյն[2], զի ազատեսցի առիւծն: Եւ իբրեւ ազատեցաւ առեւծն, դարձեալ սպասաւորէր իշոյն[2]:

Իսկ յաւուր միում դէպ եղեւ առեւծուն հանդերձ իշովն բերել ջուր յանապատն. եւ հանդիպեալ այնոցիկ որոց տարեալ էր զէշն, դարձեալ հաց բերելով ի սուրբ քաղաքն Երուսաղէմ. եւ էշն ընդ Նոսա: Եւ առեւծուն տեսեալ ծանեաւ զէշն, գնաց ընդ առաջ Նորա: Յայնժամ տեսեալ ուղտապանացն զառեւծն, զարհուրեալ փախստական եղեն ի Նմանէ: Եւ առեալ բերանաւն զպախցաց[3] իշոյն[4] եւ բերեալ ի վանսն, հանդերձ երիւք ուղտովքն[5], Նոյն բարձեալ ցորենովն, յոյժ ուրախութեամբ կացուցեալ առաջի ծերոյն: Իբրեւ ետես ծերն

1 Թ. 213 կամաւն Աստուծոյ:
2 Ձեռ. իշուն:
3 Թ. 213 բերանովն զպահուցս իշոյն:
4 Ձեռ. իշուն:
5 Ձեռ. երեք ուղտովն:

յորժ զղջացաւ, թէ ի զուր դատապարտեցաք զառեւծն. եւ եդեալ անուն առեւծուն Յորդանէ[5]։

Եւ յայնմ հետէ յոր վայր առաքէին զուղտսն ի պէտս վանիցն, զհետ նոցա երթայր առեւծն, եւ սպասաւորէր հանդերձ երկիւղիւ։ Եւ եղեւ գնալ առեւծուն զհետ ուղտուցն հեռաւոր ճանապարհ. եհաս վախճան սուրբ ծերոյն Երասիմոսի, եւ ոչ հանդիպեալ առեւծուն յանապատն։ Եւ յետ սակաւ աւուրց եկեալ խնդրէր զծերն. եւ ընթացեալ աշակերտ ծերոյն ընդ առաջ նորա եւ ասէ. Յորդանէ[6], եթող զմեզ որբ հայրն մեր եւ փոխեցաւ առ Տէր։ Եւ բերեալ կերակուր ետ առաջի նորա զի կերիցէ եւ նա ոչ եկեր. այլ յարուցեալ շրջէր եւ խնդրէր զծերն. եւ իբրեւ ոչ գտանէր, զաղաղակ բարձեալ գոչէր ձայնիւ մեծաւ եւ ողբայր դառնապէս. մինչեւ զամենեսեան յարտասուս շարժէր։ Յայն հայեցեալ աշակերտի ծերոյն կոչեաց զառեւծն եւ ասէ. Եկ զի երթեալ ցուցից քեզ զգերեզման ծերոյն։ Եւ յուղի անկեալ երթայր զկնի աշակերտին։ Եւ վասն զի հեռագոյն էր գերեզման ծերոյն ի վանիցն իբրեւ կէս մղոնաւ. եւ յորժամ եկին ի գերեզմանն, ասէ ցառեւծն։ Ահա գերեզման ծերոյն։ Եւ նորա եդեալ զծունգսն իւր ի գետինն խոնարհեցուցեալ զգլուխն իւր ի վերայ գերեզմանին լայր դառնապէս. եւ անկեալ ի գետինն թաւալէր եւ գոչէր արտասուելով եւ կոծէր չարաչար։ Եւ

1 Թ. 213 Յորդանէս։

2 Թ. 213. Յորդանէս։

այնքան հարեալ զգլուխն զգետնի, եւ մագլաւն զկուրծսն մինչ առ ժամայն անկեալ մեռանէր։ Եւ տեսողացն հիացեալ աւրհնութիւն եւ փառս մատուցանէին ամենասուրբ Երրորդութեանն որ այնպէս զփառաւորիչս իւր փառաւորէ։

Արդ կացեալ առեւծուն ի սպասաւորութեան սրբոյն երիս ամս[1] յառաջ քան զգտանել իշոյն եւ հինգ ամս[2] յետոյ, եւ մի ամն անձամբն բերեալ զջուր վանիցն։

Այս ամենայն եղեւ ոչ զի հոգի ունելով առեւծուն կամ բան, այլ աստուածային զաւրութիւնն այնպիսի սքանչելիս երեւեցուցանէ. եւ յայտ առնէ թէ զիա՛րդ նախաստեղծին Ադամայ հնազանդ էին գազանք վայրենիք յառաջ քան զպատուիրանազանցութիւնն, զմերկանալն յաստուածային փառացն եւ աւտարանալն ի դրախտին պահպանութենէ։ Եւ դարձեալ ցուցանէ թէ որ կայ եւ մնայ ի հրամանին Աստուծոյ, մեծի փառաց եւ պատուոյ արժանի լինի ի հանդերձեալ ատենին։



1 Ձեռ. Գ ամք։
2 Ձեռ. Ե ամք։

# ՑԱՆԿ ՆԻՒԹՈՑ

# ՀԵՂԻՆԱԿԻՆ ԱՇԽԱՏՈՒԹԻՒՆՆԵՐԸ

## ԱՌԱՆՁԻՆ ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹԵԱՄԲ

1. Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ. 1909։
2. Զաքարիա եպիսկոպոս Գնունեաց եւ իւր տաղերը. 1909։
3. Կիւրիոն Կաթողիկոս Վրաց. Պատմութիւն հայ-վրական յարաբերութեանց Է. դարու մէջ (քառասնամեայ շրջան Հայոց եկեղեցական պատմութենէն. 574—610). 1910։
4. Յովնաթան Նաղաշ եւ Նաղաշ Յովնաթաններ եւ իրենց բանաստեղծական եւ նկարչական աշխատութիւնք. 1911։
5. Յովհաննէս Կաթողիկոս Օձնեցւոյ նորագիւտ գրուածք մը Բանին մարմնաւորութեան վրայ. 1911 (արտատպ. “Յուշարձան„է)։
6. Ակնարկ մը Վիեննական Մխիթարեան Միաբանութեան գրական գործունէութեան վրայ. 1912։

7. Նիւթեր հայ վկայաբանութեան պատմութեան համար (1. Վարք Ս. Աբերկիոսի: — 2. Պատմութիւն Ս. Դիոնեսիոսի Արիսպագացւոյ: — 3. Վկայաբանական հատակոտորներ. քննութիւն եւ բնագիր). 1914:
8. Գաւազանագիրք Կաթողիկոսաց Աղթամարայ. 1920:
9. Հինգ պանդուխտ տաղասացներ (1. Վրթանէս եպ. Սոնկեցի: — 2. Մինաս դպիր Թոխաթեցի: — 3. Ստեփանոս երէց Թոխաթեցի: — 4. Յակոբ երէց Թոխաթեցի: — 5. Ղազար եպ. Թոխաթեցի). 1921:
10. Քանի՞ տեսակ թուական ծանօթ էր Հայոց. Կ. Պոլիս 1922 (արտատպ. Թէոդիկի 1923ի "Ամէնուն Օրացոյց„էն):
11. Ս. Եփրեմի Ասորւոյ Մեկնութիւն Գործոց առաքելոց. բնագիր. 1921:
12. Մատենագրական հետազօտութիւններ. Ա. 1922:
13. Մատենագրական հետազօտութիւններ. Բ. 1924:

